

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ՄԱՅԻՍ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ* . . . . . . 3

*ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ* . . . . . . . . . 4

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի հետագա բարելավման մասին* . . . . . . . 13

*ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների մասին* . . . . . . . 14

*ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ Մոսկվայի «Մուրճ ու մանգաղ» մետալուրգիական գործարանի բանվորների հետ հանդիպման ժամանակ* . . . . . . . 19

*ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ* . . . . . . . 29

*ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ՁԵԿՈՒՅՈՒՄԸ* . . . . . . . . 30

### ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ

Տ. ԲԱՐԱՆԵՆԿՈՎԱ— *Կատարելագործելով տնտեսավարման մեթոդները* . . . . 54

*Ռ. ԲԱԲԱՅԱՆ— Սելեկցիան պարենային ծրագրի համակարգում* . . . . . 61

### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

*Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման համար* . . . . . 67

*Մանուշակ ԲԱԴԱԼՅԱՆ— Ուսուցման արդյունավետությունը* . . . . . . 75

*Վ. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ— Պրոպագանդիստը* . . . . . . . . . 80

### ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԸ

*Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Սովետական ժողովուրդների մարտական համագործակցությունը* . 84

*Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Ոչ միայն զենքով, այլև գրչով* . . . . . . . 89

### ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

*Օֆելյա ՏՈՆՈՅԱՆ— Դեպի սիրտը լեռան* . . . . . . . . 94

ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ

ИНФОРМАЦИОННОЕ СООБЩЕНИЕ О ПЛЕНУМЕ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ СОВЕТСКОГО СОЮЗА . . . 3
РЕЧЬ ТОВАРИЩА К. У. ЧЕРНЕНКО . . . 4
ПОСТАНОВЛЕНИЕ ПЛЕНУМА ЦК КПСС о дальнейшем улучшении работы Советов народных депутатов . . . 13
ПОСТАНОВЛЕНИЕ ПЛЕНУМА ЦК КПСС об основных направлениях реформы общеобразовательной и профессиональной школы . . . 14
РЕЧЬ ТОВАРИЩА К. У. ЧЕРНЕНКО на встрече с рабочими московского металлургического завода «Серп и молот» . . . 19
ИНФОРМАЦИОННОЕ СООБЩЕНИЕ О ПЛЕНУМЕ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ АРМЕНИИ . . . 29
ДОКЛАД ТОВАРИЩА К. С. ДЕМИРЧЯНА . . . 30

НА РУБЕЖАХ ОДИННАДЦАТОЙ ПЯТИЛЕТКИ

Т. БАРАНЕНКОВА — Совершенствуя методы хозяйствования . . . 54
Р. БАБАЯН — Селекция в системе Продовольственной программы . . . 61

ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА

Для повышения боеспособности парторганизаций . . . 67
Манушак БАДАЛЯН — Эффективность учебы . . . 75
В. АЛАВЕРДЯН — Пропагандист . . . 80

ВЕЛИКАЯ ПОБЕДА В ВЕЛИКОЙ ОТЕЧЕСТВЕННОЙ

М. КАРАПЕТЯН — Боевое сотрудничество советских народов . . . 84
Г. ПЕТРОСЯН — И пером, и оружием . . . 89

ЛЮДИ НАШИХ ДНЕЙ

Офелия ТОНОЯН — В недра гор . . . 94





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1984 թվականի ապրիլի 10-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց և հավանություն տվեց ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի առաջին նստաշրջանի անցկացման հետ կապված կազմակերպական և մյուս հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի առաջարկություններին:

Այնուհետև պլենումը քննարկեց հանրակրթական և պրոֆեսիոնալ դըպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների մասին հարցը: Այս հարցի առթիվ զեկուցումով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Վ. Զիմյանինը:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ի. Բ. Ուսմանխոջաևը, ՍՄԿԿ Կրասնոյարսկի երկրկոմի առաջին քարտուղար ընկ. Պ. Ս. Ֆեդիրկոն, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ռ. Ֆ. Դեմենտևան, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ ընկ. Ա. Պ. Ալեքսանդրովը, սոցիալիստական աշխատանքի հերոս, Խարկովի «Մալիշևի անվան գործարան» արտադրական միավորման խառատ ընկ. Վ. Ա. Պետրովը:

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն:

Պլենումը ընդունեց «Ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի հետագա բարելավման մասին» և «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների մասին» որոշումներ:

Ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի ճառը և պլենումի որոշումները հրապարակվում են մամուլում:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

---

# ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՐՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ

Ընկերնե՛ր, վաղը բացվում է ՍՍՀՄ նորընտիր Գերագույն սովետի առաջին նստաշրջանը։ Կենտկոմի քաղբյուրոյում մենք տվել ենք տեղի ունեցած ընտրությունների արդյունքների համակողմանի գնահատականը։ Դրանք ցուցադրեցին աշխատավորության կողմից կուսակցության քաղաքական կուրսի լիակատար հավանությունը և համընդհանուր պաշտպանությունը։ Ավելի քան 180 միլիոն ընտրողների կարծիքի միջոցով հավաստվեց սովետական իշխանության հեղինակության անվիճելի աճը։ Ժողովրդի արտահայտած վստահության հիման վրա կարելի է հաստատակամ շարունակել մեր աշխատանքը։

Այդ աշխատանքի հիմնական ուղղությունները սահմանել է ՍՄԿԿ XXVI համագումարը։ Դրանք զարգացրել և կոնկրետացրել են Կենտկոմի հետհամագումարյան պլենումները։ Խոսքը վերաբերում է դեպի կոմունիզմ մեր առաջընթացի այնպիսի ստրատեգիային, որն ընդհանուր ոչինչ չունի ոչ գործողություններում դանդաղաշարժության հետ, ոչ էլ զարգացման պատմականորեն անհրաժեշտ աստիճանների վրայով ցատկելու հետ։ Խոսքն այն մասին է, որ դեպի կուսակցության բարձրագույն նպատակները տանող ճանապարհին մենք դեռ պետք է լուծենք իրենց ծագումով և բնույթով կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլին վերաբերող բազմաթիվ խոշոր ու բարդ խնդիրներ։ Իսկն ասած՝ այսօր հենց սա է զարգացած սոցիալիզմի կատարելագործման մեծ ու լարված աշխատանքի գլխավոր բովանդակությունը։

Հասկանալի է, որ այդ աշխատանքն անհնար է կատարել առանց մասսաների ձեռներեցության ու ստեղծագործության լայն ծավալման, առանց հասարակական կյանքի հանգուցային պրոբլեմների լուծման գործում նրանց ամենաակտիվ ներգրավման։ Դրան ենք մենք ձգտել թե՛ մեր էկոնոմիկայի աճի արագացման համար անհրաժեշտ միջոցառումներ ձեռնարկելիս և թե կուսակցության ուժերը գաղափարախոսական գործունեության վճռական բարելավմանը նպատակամղելիս։ Այդ գիծը մենք կվարենք նաև այսուհետև։ Այսօր պլենումի քննարկմանը դրված հարցերի բնույթն իսկ հիանալի առիթ է տալիս ինչպես հարկն է խորամուխ լինելու, թե ինչպես ավելի լավ օգտագործել մասսաների ակտիվացման այն ռեզերվները, որ առկա են սոցիալիստական դեմոկրատիայի, հասարակության ողջ քաղաքական սիստեմի հետագա կատարելագործման մեջ։ Եվ ամենից առաջ սովետների՝ ՍՍՀՄ-ի քաղաքական հիմքի, սոցիալիստական շինարարության հզոր միջոցի, գործունեության բարելավման մեջ։

Հիշեցնեմ, որ Հոկտեմբերից հետո շատ չանցած Վ. Ի. Լենինը խնդիր առաջադրեց սովետները վերածել պետական ղեկավարման այնպիսի մարմինների, որոնք գործեին ոչ միայն աշխատավորների համար, այլև աշխատավորների միջոցով։ Այժմ լիակատար իրավունքով կարելի է ասել, որ այդ խնդիրը հիմնականում լուծված է։ Երկու միլիոն 300 հազար դեպուտատ՝ բանվորների, գյուղացիների ու մտավորականության ներկայացուցիչներ, բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորներ, տասնյակ միլիոնավոր ակտիվիստներ՝ ահա թե մեզանում ում միջոցով են կատարվում պետության գործերը։

Մենք միշտ էլ, և հատկապես ՍՍՀՄ նոր սահմանադրության ընդունումից հետո, ընդլայնել ենք բոլոր աստիճանների սովետների լիազորությունները։ Դա նպաստել է օրենսդրության, կառավարման ու վերահսկողության միասնության լենինյան սկզբունքի առավել լրիվ իրականացմանը նրանց գործունեության մեջ։



Սակայն, ընկերնե՛ր, պետք է խոստովանել, որ սովետների հսկայական պոտենցիալը այնուամենայնիվ անբավարար է իրացվում։ Բերեմ այսպիսի օրինակ։ Մեզ մոտ մի շարք որոշումներ են ընդունված տնտեսական ու մշակութային շինարարության մեջ տեղական սովետների դերը բարձրացնելու նպատակով։ Հույս ենք ունեցել, և ճիշտ ենք վարվել, որ դա կօգնի ապահովելու էկոնոմիկայի կոմպլեքսային զարգացումը տեղերում, ավելի ամուր պատնեշ կկանգնեցնի գերատեսչականության դեմ, հնարավորություն կընձեռի ավելի լրիվ բավարարելու բնակչության բազմազան պահանջմունքները, բարելավելու նրա սպասարկումը։

Մի խոսքով, որոշումները լավն են։ Բայց դրանք կատարվում են դանդաղ, կիսատ-պռատ։ Շատ մինիստրություններ տակավին փորձում են տեղական սովետներին շրջանցելով գործել։ Իրենց գործունեությունը կենտրոնացնելով արդյունաբերական օբյեկտների շինարարության ու վերակառուցման վրա, նրանք հաճախ հարկ եղած ուշադրությունը չեն նվիրում բնակարանային շինարարությանը, սոցիալ-կենցաղային և մշակութային օբյեկտներին։ Ասենք՝ սովետները ևս միշտ չէ, որ հարկ եղած հաստատակամություն են ցուցաբերում իրենց իրավունքներն օգտագործելիս։ Դրա հետևանքով ամենուրեք ուշանում է բնակարանների, հիվանդանոցների, մանկական հիմնարկությունների գործարկումը։ Թերավարտ օբյեկտները երբեմն ընդունվում են որպես պատրաստի։ Թույլ են տրվում բնության պահպանության նորմաների խախտումներ։

Կան նաև այլ պրոբլեմներ, որոնց լուծման գործում սովետները պետք է ավելի մեծ ակտիվություն դրսևորեն։ Ժողովրդական դեպուտատները, օրինակ, մի՞թե կարող են հաշտվել այնպիսի փաստերի հետ, որոնց մասին աշխատավորները հաճախ գրում են կենտրոնական մարմիններին, ինչպիսին են՝ ցուրտը բնակարաններում, հակասանիտարական վիճակը քաղաքում, ավանում, թերությունները տրանսպորտի աշխատանքում, վատ լուսավորությունը փողոցներում կամ խուլիգանությունը հասարակական վայրերում։

Ընդհանուր առմամբ որոշակի հակասություն, անհամապատասխանություն կա մի կողմից սովետների բազմահարուստ հնարավորությունների և մյուս կողմից՝ այն բանի միջև, թե նրանք իրականում ինչպես են օգտագործում այդ հնարավորությունները։ Այստեղ անկարելի է չվերհիշել լենինյան այն միտքը, որ սովետների լիակատար իշխանությունը «բավական չէ ձևականորեն դեկրետագրել», այլ անհրաժեշտ է նաև «գործնականապես կարգավորել և ստուգել կառավարման կանոնավոր, ամենօրյա աշխատանքով»։

Այստեղից արվող հետևություններն ակնբախ են։ Պետք է օգտագործել սովետների գործունեության վրա կուսակցական ազդեցության բոլոր մեթոդները, որպեսզի բարձրացվի դրա արդյունավետությունը, վերացվեն ձևամոլության ամեն տեսակ տարրերը։ Սա օրվա պահանջն է։ Այս պահանջը ներկայացվում է բոլոր կուսակցական կոմիտեներին։ Եվ, անշուշտ, կոմունիստ դեպուտատներին, որոնց միջոցով և կուսակցությունն իրականացնում է իր ղեկավար դերը սովետներում։ Այստեղ կարևոր է նրանց օրինակը, կարևոր է նրանց պատասխանատու վերաբերմունքը դեպուտատական պարտականությունների նկատմամբ։ Նրանք կոչված են սովետների աշխատանքում ներդնելու կազմակերպող սկզբունքը, իրենց շուրջը համախմբելու բոլոր ժողովրդական ընտրյալներին, խթանելու և ուղղություն տալու նրանց ստեղծագործական նախաձեռնությանը։

Այսօր հենց այսպիսին է, ընկերներ, մեր գլխավոր համակուսակցական խնդիրը սովետների ղեկավարման գործում։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ սահմանադրությամբ նրանց տրված լիիշխանությունը մշտապես և ամենուրեք արտահայտվի նրանց գործունեության թե՛ բովանդակության և թե ոճի մեջ։

Վերցրեք հենց նստաշրջանների աշխատանքը։ Այստեղ է, որ առավել լրիվ է բացահայտվում սովետների էությունը՝ որպես իսկական ժողովրդապետության մարմինների, որոնք արտահայտում են մասսաների շահերն ու կոլեկտիվ փորձը։ Մեծ է նստաշրջանների դերը նաև մեր տնտեսական գործերում։ Նրա-

տաշրջաններում կանոնավոր կերպով քննարկվում և հաստատվում են պլանները, դրանց կատարման հաշվետվությունները։ Այստեղ ծառանում են մեր էկոնոմիկայի զարգացման լուրջ հարցեր։ Իրերի տրամաբանությամբ դրանք պետք է հարուցեն կարծիքների նույնքան լուրջ, աշխույժ փոխանակություն։ Սակայն բնավ միշտ չէ, որ այդպես է լինում։

Բայց բանը միայն սա չէ։ Տնտեսական աշխատանքը, ինչպես և դրա գործուն վերահսկողությունը, պահանջում են թե՛ կոնկրետություն և թե օպերատիվություն։ Իսկ դրան, անշուշտ, դժվար է հասնել, եթե այդ աշխատանքին անդրադառնան միայն նստաշրջաններում, որքան էլ դրանք ակտիվ ընթանան։

Յուրաքանչյուր սովետում գոյություն ունեն մշտական հանձնաժողովներ։ Եվ ահա, հարկավոր է, որ նրանք մշտապես ձեռքը պահեն մեր տնտեսական կյանքի զարկերակի վրա։ Իսկ սա նշանակում է նաև ժամանակին արձագանքեն ժողովրդական տնտեսության կարիքներին, օգնեն գտնելու սովետների, նրանց գործադիր մարմինների հիմնավոր տնտեսական որոշումներ, սիստեմատիկաբար վերահսկեն այդ որոշումների կատարմանը։ Այս առումով փորձ կուտակված է։ Բայց ժամանակը պահանջում է զգալիորեն հարստացնել այդ փորձը։

Մենք հասել ենք հնգամյակի չափազանց պատասխանատու բնագծի, երբ հաշիվը կատարվում է արդեն ըստ ամիսների։ Ընդ որում, վիճակը բնավ այնպիսին չէ, որ հնարավոր լինի յոլա գնալ առանց մեր տնտեսական աշխատանքի լարվածության հետագա բարձրացման։ Այս են վկայում նաև առաջին եռամսյակի արդյունքները։ Որոշակի հաջողություններն առկա են։ Սրա հետ միասին ի հայտ են եկել նաև ետ մնացող տեղամասեր։

Քաղբյուրոյի մոտակա նիստում մենք հատկապես կքննարկենք ժողովրդատնտեսական պլանի կատարման ընթացքը, կնշենք գործերի վիճակի բարելավման կոնկրետ միջոցառումներ։ Բայց հիմա էլ պարզ է՝ ճիշտ կլինի, եթե մենք բոլորս, մեզնից յուրաքանչյուրը թույլ չտանք որևէ ուժաթափում։ Պետական պլանի կատարման համար անհանգստությունը, նույնիսկ եթե կուզեք՝ տագնապը, ոչ մի րոպե չպետք է մեզ լքեն։ Եվ եկեք պայմանավորվենք. այս տարի թույլ տրվող ամեն մի վրիժեցման, ամեն մի թերի գործի համար խըստապահանջությունը պետք է լինի ավելի մեծ, քան երբէ։ Կուսակցական այլ դիրքավորում մենք չենք կարող ունենալ։

Կոմունիստ դեպուտատներից մենք սպասում ենք, որ նրանք կօգնեն գործի նկատմամբ նույնպիսի մոտեցման հաստատմանը նաև սովետներում։ Մեր էկոնոմիկան քիչ չի շահի, եթե սովետներն իրենց համար կանոն դարձնեն բոլոր մակարդակների տնտեսական ղեկավարների աշխատանքի խստապահանջ և անաչառ գնահատումը։

ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում մենք պետք է հաստատենք ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի կազմը։ Այս առնչությամբ կցանկանայի մեր մինիստրների ու գերատեսչությունների ղեկավարների ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ ժողովրդատնտեսական խնդիրների լուծման գործում մեծ ու բազմազան են նրանց դերն ու պատասխանատվությունը։ Սա նաև նշանակում է անձնական ստեղծագործական նախաձեռնող գործունեություն։ Սա ենթակա ձեռնարկությունների ու կազմակերպությունների համերաշխ, համախմբված աշխատանքի կազմակերպման կարողությունն է և ընդունակությունը։ Սա նաև հստակ փոխգործողությունն ու հարցերի լուծումն է հարակիցների հետ։ Եվ, անշուշտ, մշտական հոգատարությունը և ուշադրությունն է աշխատավորների կարիքների ու պահանջմունքների նկատմամբ։ Այն մասին, թե, որքան հաջող է աշխատում այս կամ այն ղեկավարը, մենք կդատենք ո՛չ միայն, պլանային ցուցանիշները, պայմանագրային պարտավորությունները լիովին և ժամանակին կատարելու հիման վրա, այլև ըստ այն իրական ջանքերի, որ նպատակամղված են մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավմանը։

Մենք այժմ ձեռնամուխ ենք եղել ժողովրդական տնտեսության կառավարման համակարգի բազմակողմանի կատարելագործմանը, որոնում ենք



տնտեսական գործունեության նոր ձևեր ու ստրուկտուրաներ։ Սակայն նորի անհրաժեշտ որոնումները մեզ, անշուշտ, չպետք է շեղեն կառավարման արդեն առկա հաստատությունների առավել արդյունավետ օգտագործումից։ Եվ ամենից առաջ՝ սովետական մարմինների։ Այստեղ հարկավոր չէ ստեղծել նոր կարողություններ։ Բավական է, որ լիովին սկսեն գործել արդեն եղածները։

Դե, քանի որ խոսք բացվեց կառավարման մասին, չեմ կարող շրջանցել վարչական ապարատի կրճատման պրոբլեմը։ Կրճատման աշխատանքը պետք է կատարել կառավարման ո՛չ միայն ստորին և միջին աստիճաններում, այլև նրա, այսպես ասած, վերևներում։ Անկախ նրանից, դա ոմանց դուր է գալիս, թե ոչ, բայց այդ անհրաժեշտ է։ Մանավանդ որ կենտրոնի օրինակը շատ բան արժե։

Մենք բոլորս հասկանում ենք, որ խոսքը վերաբերում է լուրջ գործի։ Եվ այդ գործին պետք է ձեռնամուխ լինել կուսակցականորեն։ Նախ՝ մի կողմ թողնել սուբյեկտիվ նկատառումները։ Եվ երկրորդ՝ տոգորվել այն գիտակցությամբ, որ սա միանվագ կամպանիա չէ։ Մեր նպատակն է հասնել արտադրության մեջ և կառավարման ոլորտում զբաղված աշխատողների թվական կազմի լավագույն հարաբերակցության։ Այստեղ անկարելի է յոլա գնալ մարդկանց մի գրասենյակից մյուսը տեղափոխելով։ Անհրաժեշտ է վերացնել վարչական ապարատի ուռճացման պատճառները, մշտապես բարելավել կառավարչական աշխատանքի կազմակերպումը և տեխնիկական զինվածությունը։ Եվ, անշուշտ, ստեղծել այնպիսի պայմաններ, որ մարդիկ իրենք շահագրգռված լինեն, պատկերավոր ասած՝ գրասենյակային սեղանից անցնելու հաստոցի մոտ։ Պարզ է, թե, ընդսմին, ինչ պրոբլեմներ են ծառանում։ Եվ հարկավոր է, որ դրանց լուծմամբ լրջորեն զբաղվեն պետական, պլանային մարմինները և, իհարկե, գերագույն և տեղական սովետները։

Մենք, ընկերնե՛ր, հիշում ենք լենինյան այն պահանջը, որ սովետների աշխատանքում պետք է «առաջին տեղը գրավի փաստական վերահսկողությունը կենտրոնական իշխանության և տեղական հիմնարկությունների որոշումների իրական կատարման նկատմամբ»։ Այս գործը մեզ մոտ ընդհանուր առմամբ կատարվում է։ Շատ սովետներ արդյունավետ են օգտագործում հաշվետու մարմինների ու պաշտոնատար անձանց, իրենց տարածքում գտնվող կազմակերպությունների ու ձեռնարկությունների գործունեության վերահսկման իրենց իրավունքը։ Եվ, այնուամենայնիվ, այստեղ դեռ շատ անելիքներ ունեն կոմունիստ դեպուտատները, սովետների կուսակցական խմբերը։

Օրինակ, գոյություն ունի վերահսկողության նաև մի այնպիսի գործուն ձև, ինչպիսին է դեպուտատական հարցապնդումը։ Ես հետաքրքրվեցի, թե դա արդյոք հաճա՞խ է կիրառվում։ Պարզվում է, որ վերջին տարիներս բոլոր սովետներում միջին հաշվով մոտավորապես երեսուն դեպուտատին ընկնում է մեկ հարցապնդում։ Այս թիվն ինքնըստինքյան գուցե քիչ բան է վկայում։ Բայց այն համադրեցեք Կենտկոմում, թերթերի խմբագրություններում և հենց բոլոր աստիճանների սովետներում աշխատավորներից ստացվող նամակների հոսքի հետ։ Շատ նամակներում արծարծվում են մեր կյանքի խոշոր և մարդկանց հուզող հարցեր։ Վստահ եմ, որ ժողովրդական դեպուտատները թե՛ լավ գիտեն և թե համամիտ են աշխատավորների այդ հոգսերին։ Իսկ ահա դրանք սովետներում արտահայտել, ընդհանուր, հրապարակային քննարկման դնել, պարզվում է, բոլորը չէ, որ կարողանում են։

Ըստ երևույթին պետք է բարձրացնել սովետների դերը նաև իրենց ընդունած բոլոր որոշումների, սովետական բոլոր օրենքների կատարման վերահսկողության գործում։ Մեզանում ոչ ոքի չի թույլատրված օրենքները ոչ խախտել, ոչ էլ շրջանցել։ Ասում եմ այն, ինչ ամենքին է հայտնի։ Բայց ասում եմ, որովհետև, ցավոք, բոլորը չէ, որ այստեղից անհրաժեշտ գործնական հետևություններ են անում։

Օրինակներ բերելու համար հարկ չկա հեռու գնալու։ Մեզնից շատերը բազմիցս ականատես են եղել այսպիսի վիճակի։ Հենց նոր քննարկված և միաձայն հաստատված է հնգամյա կամ տարեկան պլանը։ Հետևաբար, այն ձեռք

է բերել օրենքի ուժ։ Իսկ ի՞նչ է կատարվում հետո։ Չէ՞ որ փաստ է, որ մեկ այս, մեկ այն գերատեսչության, մեկ այս, մեկ այն մարզի ներկայացուցիչները, հաճախ առանց հարկ եղած հիմքերի, նյութական, ֆինանսական նոր ռեսուրսներ են պահանջում ի լրումն այն ռեսուրսների, որ նրանց հատկացվել են պլանով։ Սա, ուղղակի ասենք, մեր հին ցավն է։ Իսկ որոշ ընկերներ էլ դրան այնքան են վարժվել, որ այդ համարում են գրեթե կյանքի նորմա։ Ավելին, ոմանք, ըստ երևույթին, կարծում են, թե լրացուցիչ միջոցներ կորզելիս ցուցաբերվող պնդերեսությունը գործարարության լավագույն վկայությունն է։

Դա, իհարկե, այդպես չէ։ Իսկական գործարարություն հարկավոր է պլանները կազմելիս, սովետների հանձնաժողովներում, նստաշրջաններում դրանք քննարկելիս։ Ահա թե որտե՛ղ պետք է վիճել, պաշտպանել ընտրողների շահերը, որ արտահայտված են նրանց տված պատվիրաններում, պայքարել հանուն իրենց կարծիքի։ Բայց երբ պլանը դարձել է օրենք, հարկավոր է այն հարգել և անշեղորեն կատարել։ Եվ սա միայն տնտեսական կարգապահության հարց չէ։ Սա կուսակցական, քաղաքական պատասխանատվության հարց է։ Էլ ո՞վ, եթե ոչ մենք՝ կոմունիստներս, այն էլ՝ ղեկավար կոմունիստներս, ամենից առաջ պետք է հոգանք սովետական իշխանության օրենքների հեղինակությունն ամրապնդելու մասին։

Զուր չեն ասում՝ օրենքը խիստ է, բայց՝ արդար։ Մեզ մոտ օրենքներն իրոք խիստ են։ Եվ դրանք նույնքան խստորեն էլ պետք է կատարվեն։ Այլապես իզուր կանցնեն կարգուկանոնի, կազմակերպվածության, սոցիալիստական օրինականության ամրապնդման նպատակով գործադրվող բոլոր ջանքերը։ Բայց, անշուշտ, այս ամենի համար անհանգստանալով, մենք մտադիր չենք կաշկանդելու մարդկանց ձեռներեցությունը, նրանց կյանքը խցկելու «աքցանի մեջ», ինչպես բարբառում են Արևմուտքում։ Ո՛չ։ Օրենքի մեջ մեզ համար կարևոր է ո՛չ միայն խստությունը, այլև նրա արդարացիությունը, ընդ որում՝ բառիս ամենալայն իմաստով։ Նաև նրանով, որ օրենքի առջև բոլորը հավասար են։ Նրանով, որ մեր իրավական նորմերը, մեր օրենսդրությունը նպատակամղված են աշխատավորների շահերի պաշտպանությանը, նրանց աշխատանքային ու հասարակական ակտիվության զարգացմանը։

Հենց այդպիսին էր տասներորդ գումարման Գերագույն սովետի կատարած օրենսդրական մեծ աշխատանքի ուղղվածությունը։ Հիշեցնեմ թեկուզ աշխատավորական կոլեկտիվների մասին նրա ընդունած օրենքը։ ՍՍՀՄ Գերագույն սովետը և հանրապետությունների գերագույն սովետները նույն գիծը, անտարակույս, կշարունակեն այսուհետ ևս։ Գլխավորն այն է, որ թե՛ գործող օրենքները և թե նորերը ծառայեն սոցիալիստական դեմոկրատիայի ծաղկմանը, ավելի ու ավելի լայն ժողովրդական զանգվածների ներգրավմանը՝ շահագրգռությամբ մասնակցելու արտադրության, պետության, հասարակության կառավարմանը։

Ընկերնե՛ր, այնպիսի մի երկրում, ինչպիսին մերն է, բնականաբար, չեն կարող օրակարգից հանվել ազգամիջյան հարաբերությունների կատարելագործման խնդիրները։ Սովետները, որոնք ակնառու դեր են խաղացել ազգային գժտության վերացման, ժողովուրդների եղբայրական բարեկամության հաստատման գործում, պետք է լրջորեն խորամուխ լինեն ազգային հարցի բովանդակությանը նաև այն ձևով, ինչ ձևով այն գոյություն ունի զարգացած սոցիալիզմի պայմաններում։ Չէ՞ որ սա հենց այն ոլորտն է, որտեղ բեղմնավոր աշխատանքը անհնար է կատարել այլ կերպ, քան կոլեկտիվիստական, ինտերնացիոնալիստական հիման վրա, հաշվի առնելով գործի բոլոր նրբությունները։

Մեր սովետների, ամենից առաջ ՍՍՀՄ Գերագույն սովետի, թե՛ կառուցվածքի և թե ողջ գործունեության մեջ ակնբախորեն մարմնավորվում է ինտերնացիոնալիստականի և ազգայինի միասնությունը։ Դա լավ է ծառայել և ծառայում է ՍՍՀ Միության ամրապնդմանը։ Սրա հետ միասին մեր պետության մեջ հաստատված ազգամիջյան հարաբերությունները մենք չենք համարում ինչ-որ քարացած, անփոփոխ, որոնք ենթակա չեն նոր հանգամանքների և ժամանակի ազդեցությանը։ Իսկ սա նշանակում է, որ, զարգացնելով աշխատանքի



ռկա, իրենց արդարացրած կազմակերպական ձևերն ու մեթոդները, պետք է մշտապես որոնել նաև նորերը, որոնք նպաստեն ազգերի ծաղկմանն ու նրանց մերձեցմանը։ Կարծում ենք, որ կյանքի բուն ընթացքով ծնված այս հարցը արժանի է թե՛ Կենտկոմի անդամների և թե Գերագույն սովետի դեպուտատների ուշադրությանը։

Սովետները, ամենից առաջ ՍՍՀՄ Գերագույն սովետը, ծանրակշիռ ավանդ են ներդնում նաև ամենօրյա այն մեծ աշխատանքում, որ նպատակամղված է մեր արտաքին քաղաքականության խնդիրների լուծմանը։ Մենք ձեզ հետ միասին լավ գիտենք, թե որքան բարդ է արդի միջազգային իրադրությունը։ ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը հսկայական ջանքեր են գործադրում, որպեսզի կանխեն միջուկային պատերազմը, պահպանեն և ամրապնդեն աշխարհի խաղաղությունը։ Մենք հետևողականորեն, նախաձեռնողաբար գործն այնպես ենք վարում, որ վերացվի լարվածությունը համաշխարհային քաղաքականության մեջ, սանձահարվի սպառազինությունների մրցավազքը, հուսալիորեն ապահովվի մեր երկրի անվտանգությունը։ Մեր ամենօրյա հոգսերի շրջանակի մեջ է մտնում սոցիալիզմի միջազգային դիրքերի ամրապնդումը, ազատագրական շարժումների հետ համերաշխության ամրապնդումը։

Գերագույն սովետի պալատների արտաքին գործերի մշտական հանձնաժողովները շատ բան են անում արտաքին աշխարհի հետ մեր կապերի զարգացման ասպարեզում, երկիրը ներկայացնում են միջազգային կարևոր հանդիպումներում, երբեմն դժվարին բանակցություններում։ Սակայն այդ պատասխանատու գործունեության մեջ առայժմ դեպուտատների համեմատաբար նեղ շրջանակ է ակտիվորեն ներգրավվում։ Դեպուտատական պարտականությունների կատարումը մյուսների համար հաճախ, հիմնականում հանգում է արարողական բնույթի գործողությունների մասնակցելուն։ Սա հազիվ թե արդարացված է։ Արտաքին գործերի հանձնաժողովները կարող էին ավելի մեծ ուշադրություն նվիրել միջազգային պրոֆիլի գերատեսչությունների ու կազմակերպությունների գործունեության կոորդինացմանն ու վերահսկմանը, իրենց նիստերում ավելի հաճախակի լսել նրանց ներկայացուցիչներին։ Այլ խոսքով՝ անհրաժեշտ է դարձել ընդլայնել այդ հանձնաժողովների կազմի մեջ մտնող դեպուտատների աշխատանքի շրջանակները։

Հատկապես կցանկանայի խոսել սովետների աշխատանքի մասին մեր հայրենիքի պաշտպանունակության հետագա ամրապնդման գործում։ Արդի իրադրությունը մեզանից մշտական և համակողմանի ջանքեր է պահանջում երկրի անվտանգության ապահովման և սովետական մարդկանց խաղաղ աշխատանքի հուսալի պաշտպանության ասպարեզում։ Այս խնդրի լուծման գործում էլ սովետները պետք է իրենց ավանդը ներդնեն։

Մի խոսքով, ընկերնե՛ր, կոմունիստ դեպուտատները, կուսակցական կոմիտեները, ողջ կուսակցությունը պետք է հասնեն այն բանին, որ սովետները միշտ գործուն հոգատարություն ցուցաբերեն այն ամենի նկատմամբ, ինչով ապրում են ժողովուրդը, երկիրը։ Այժմ սովետական մարդկանց ուշադրությունն իր վրա է սևեռել դպրոցի ռեֆորմը։ Սա համաքաղաքական հսկայական նշանակություն ունեցող հարց է, և հենց դա էլ մեզ մղեց այն դնել Կենտկոմի պլենումի քննարկմանը։

Որպեսզի սովետական հասարակությունը վստահորեն առաջ ընթանա դեպի մեր մեծ նպատակները, յուրաքանչյուր նոր սերունդ պետք է հասնի կրթության և ընդհանուր կուլտուրայի, պրոֆեսիոնալ որակավորման և քաղաքացիական ակտիվության ավելի բարձր մակարդակի։ Այսպիսին է, կարելի է ասել, սոցիալական առաջընթացի օրենքը։

Գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, ինֆորմացիայի հեղեղանման աճի պայմաններում այդ օրենքը չտեսնված բարձր պահանջներ է ներկայացնում թե՛ նրանց, ովքեր սովորում են և թե նրանց, ովքեր սովորեցնում են՝ սկսած շարքային մանկավարժից մինչև մինիստր։ Ռեֆորմը հենց կոչված է ստեղծելու բոլոր անհրաժեշտ նախադրյալները այս պահանջների կատարման համար։ Եվ, անշուշտ, վերացնելու լուսավորության ոլորտում, այդ

թվում նաև դրա ղեկավարման գործում եղած թերությունները։ Այժմ, համաժողովրդական քննարկումից հետո, դպրոցի ռեֆորմի մասին Կենտկոմի նախագիծը հարստացել է կոլեկտիվ բանականությամբ և միլիոնավոր մարդկանց կենսափորձով։ Կցանկանայի միանալ այն ընկերներին, ովքեր առաջարկեցին հիմնականում հավանություն տալ նախագծին և այն ներկայացնել Գերագույն սովետի քննարկմանը։

Այժմ հարկավոր է մտածել այն մասին, որ ռեֆորմի գաղափարները լիովին կենսագործվեն, չմնան թղթի վրա։ Այստեղ գլխավորն այն է, որ դպրոցի վերակառուցման ողջ աշխատանքը ապահովվի նյութական ու կազմակերպական կայուն բազայով։ Պետք է հոգալ շատ բաների մասին՝ սկսած ուսումնական պրոցեսի վերակառուցումից ու դպրոցականների աշխատանքի կազմակերպումից, մանկատների ու գիշերօթիկների աշխատանքում կարգուկանոնի հաստատումից մինչև ուսուցիչների կենսապայմանների բարելավումը։

Ի դեպ, կարող եմ հաղորդել, որ արդեն սեպտեմբերի 1-ից սկսվելու է ուսուցիչների և ժողովրդական կրթության մյուս աշխատողների աշխատավարձի աստիճանական բարձրացումը միջին հաշվով 30—35 տոկոսով։ Այս միջոցառումը կվերաբերի վեց միլիոն մարդու։ Դա կպահանջի տարեկան գրեթե երեքուկես միլիարդ ռուբլի։ Դյուրին չէ պետական բյուջեից այսքան գումար վերցնելը։ Բայց մենք գտնում ենք, որ սա ժողովրդական դրամի շատ ճիշտ, տնտեսատիրական ներդրում է։

Դպրոցի ռեֆորմը միանվագ միջոցառում չէ։ Եվ բանը ո՛չ միայն այն է, որ այս ռեֆորմն իրագործվելու է երկու հնգամյակի ընթացքում։ Երբ խոսքը վերաբերում է կենդանի մարդկանց, առավել ևս՝ երեխաներին, չի կարելի ամեն ինչ վաղօրոք պատկերել։ Պրակտիկան, անտարակույս, շտկումներ կմուծի մեր որոշ կանխանշումների ու պլանների մեջ, բայց դրանից չպետք է վախենալ։ Կարևորն այն է, որ տեսադաշտից չկորցնենք մեր ստրատեգիական կողմնորոշիչը՝ համակողմանիորեն զարգացած անձնավորության ձևավորումը։

Նաև կարևոր է հստակ պատկերացնել այն պրոբլեմների բնույթն ու մասշտաբները, որ ծառանում են ռեֆորմի հետ կապված, բայց շատ բանով դուրս են նրա շրջանակներից։ Բարձր դասարանցիների արտադրողական աշխատանքի կազմակերպման համար պլանավորվում է, օրինակ, էկոնոմիկայի տարբեր ճյուղերում հատկացնել կամ ստեղծել արդիական սարքավորումներով հագեցած մի քանի միլիոն աշխատատեղ։ Հարցը, ընկերներ, դրվում է հենց այդպես։ Եվ պետպլանը պետք է այս գործը օրգանապես ներառնի երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մեջ։

Որքան սերտորեն իրար մոտեցնենք դպրոցն ու արտադրությունը, այնքան լիակշիռ կլինի ռեֆորմից ստացվող հատույցը։

Դաստիարակչական, քաղաքական հատույցը։ Սովետական երիտասարդները պետք է ինքնուրույն կյանք մտնեն որպես բարձրակիրթ և աշխատասեր մարդիկ։ Եվ ինչ էլ որ դառնան մեր զավակները՝ բանվոր թե գյուղատնտես, գիտնական թե ինժեներ, նրանք պետք է դասակարգային կոփվածք ստանան աշխատավորական կոլեկտիվներում։ Պետք է հասնենք այն բանին, որ արտադրությանը նրանց ծանոթանալը տա դաստիարակչական հենց այն արդյունքը, որ մեզ հարկավոր է։

Մենք ռեֆորմից սպասում ենք նաև տնտեսական, կադրային հատույց։ Բարձրդասարանցիների համար ստեղծվող յուրաքանչյուր աշխատատեղ պետք է հասարակությանը տա կոնկրետ արդյունք, թեկուզև ոչ մեծ, բայց անպայման ռեալ արդյունք։ Իսկ միջնակարգ կրթությունն ավարտելուց հետո ժողովրդական տնտեսության ոլորտ կգան դպրոցների ու պրոֆտեխնիկական ուսումնարանների միլիոնավոր շրջանավարտներ՝ զինված կայուն գիտելիքներով և աշխատանքային անհրաժեշտ հմտություններով։

Ուզում եմ ընդգծել, որ այն շեշտը, որ մենք այժմ դնում ենք դպրոցականին իր կարողությունների չափով արտադրողական աշխատանքով դաստիարակելու վրա, իր ողջ սկզբունքային կարևորությամբ հանդերձ չի բացա-



ռում այն ճշմարտությունը, որ երեխայի գլխավոր աշխատանքը, իհարկե, ուսումնառությունն է, գիտության հիմունքներին կայուն կերպով տիրապետելը։ Այստեղից էլ՝ դպրոցում հանրակրթական բոլոր առարկաների, այդ թվում, անշուշտ, հասարակագիտական առարկաների դասավանդումը բարելավելու պահանջը։ Առանց դրա անկարելի է այսօր, առավել ևս հեռանկարում, կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերը հուսալիորեն ապահովել իրենց գործը լավ իմացող մարդկանցով, որոնք ունակ լինեն մշտապես աճելու թե՛ զուտ պրոֆեսիոնալ և թե ինտելեկտուալ առումով։

Այսօր ուսումնական ողջ պրոցեսը պետք է անհամեմատ մեծ չափով կրի աշխարհայացքային բովանդակություն։ Բեռնաթափելով ուսումնական ծրագրերը, ստեղծելով նոր, կարգին դասագրքեր, չի կարելի դրանք թեթևացնել գաղափարապես, իջեցնել դասավանդման գիտական մակարդակը։ Դպրոցի կոչումն է՝ աշակերտների մեջ ձևավորել մարքս-լենինյան համոզվածություն, ինքնուրույն, ստեղծագործական մտածողության ընդունակություն, զարգացնել իր պատասխանատվության գիտակցումը սոցիալիստական հայրենիքի բախտի համար։ Եվ, իհարկե, կայուն իմունիտետ ներարկել մեզ համար խորթ հայացքների ու բարքերի հանդեպ։ Հարկավոր է, որ դպրոցում ո՛չ միայն խոսեն կոմունիստական բարոյականության թեմաներով, այլև երեխաներին սովորեցնեն այդ բարոյականությանը համապատասխանեցնել իրենց վարքագիծը։ Ահա թե հանուն ինչի պետք է ավելի ակտիվորեն զարգացնել ինքնավարական հիմունքները դպրոցական կոլեկտիվներում։ Բնականաբար՝ ուսուցիչների խելացի օգնությամբ։ Դպրոցների պիոներական դրուժինաների ու կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում ոչ ձևամոլություն և ոչ էլ տաղտուկ չպետք է լինի։

Որքան էլ մեծ լինի դպրոցի դերը, բայց միայն այն չէ, որ դաստիարակում է աճող մարդուն։ Բնավորության հիմքերը, կենսական ելակետային կողմնորոշումները՝ այս ամենի սկիզբը դրվում է ընտանիքում։ Եվ լավ բան մի սպասիր, եթե դպրոցը մի բան է ներշնչում, իսկ ընտանիքը՝ մի այլ բան։ Նման երևույթների կողքով իրավունք չունեն անցնելու կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները։ Ռեֆորմը պայմաններ է ստեղծում ժողովրդական կրթության ամբողջ համակարգի զուգակցված զարգացման համար։ Ներառյալ, անշուշտ, նաև բարձրագույն դպրոցը, որը էականորեն ազդում է մեր տնտեսական, սոցիալական ու հոգևոր առաջադիմության տեմպերի վրա, ասենք նաև՝ երկրի պաշտպանունակության վրա։ Հենց այստեղ են ստեղծվում այն բանի մարդկային նախադրյալները, ինչը մեր առաջնահերթ հոգատարության առարկան է՝ տնտեսավարման սոցիալիստական սիստեմի օրգանական միացումը գիտատեխնիկական հեղափոխության նորագույն նվաճումների հետ։

Կուսակցության XXVI համագումարում, Կենտկոմի հունիսյան պլենումում նշվեցին ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրության աշխատանքում տեղ գտած զգալի թերությունները։ Սակայն բարձրագույն դպրոցի առջև դրված խնդիրները տակավին կատարված չեն։ Ըստ երևույթին իրեն զգալ է տալիս իներցիայի ուժը, հնի սովորույթի ուժը։ Թեպետ այստեղ կան նաև օբյեկտիվ դժվարություններ։ Պետք է խորամուխ լինել՝ ինչն ինչից է և շտկել գործերի վիճակը։

Առհասարակ, ընկերնե՛ր, պետք է ուշադրությամբ հետևել, թե ինչպես են կատարվում XXVI համագումարի որոշումները բոլոր բնագավառներում։ Շուտով լինելու է նոր կուսհամագումար և դրան պետք է պատրաստվել արդեն հիմա։

Մեզ՝ կոմունիստներիս համար համագումարի նախապատրաստությունը ձեռք բերվածի իմաստավորման, անփոփման ժամանակաշրջան է, այն ամբողջ դրականի ակտիվ ամրապնդման ժամանակաշրջան, ինչին մենք հասել ենք։ Դա նաև թույլ տրված սխալներից դասեր առնելու, թերությունները ինքնաքննադատաբար վերլուծելու, դրանց հաղթահարման ուղիները և գլխավորը՝ նոր մեծ խնդիրների լուծման ուղիներ սահմանելու ժամանակաշրջան է։

*Այս խնդիրների կատարումը վճռական չափով պայմանավորված է կադրերով։ Կադրերը կուսակցության ու պետության իրոք ոսկե ֆոնդն են։ Այդ ֆոնդը կարիք ունի մշտական համալրման, թարմ ուժերի ներհոսի։ Բացի դրանից, ինչպես ցույց տվեց կուսակցական կազմակերպություններում անցկացված հաշվետու-ընտրական կամպանիան, բոլոր ղեկավար կոմունիստները չէ, որ արդարացնում են իրենց ցույց տրված վստահությունը։ Կադրերի հետ կատարվող աշխատանքում, ինչպես ուրիշ ոչ մի տեղ, կարևոր է հստակ, մտածված համակարգը։ Այստեղ անթույլատրելի են կադրային կազմի ոչ հաճախակի փոխելիությունը, ոչ էլ որևէ ոսկրացում։ Մեղանում կարծես թե բոլոր կուսակցական կոմիտեներն էլ առաջքաշման ռեզերվ ունեն։ Իսկ ինչու, ընկերնե՛ր, երբ հարկավոր է պատասխանատու պոստի համար ընդունակ մարդ գտնել, այդ բանն անելը հաճախ խիստ դժվար է լինում։ Ստացվում է, որ այդ ռեզերվը հաճախ միայն թղթի վրա է։ Այս կարևորագույն գործի մեջ պետք է լիակատար պարզություն մտցնել։ Հենց այս նպատակով էլ մենք ուզում ենք քաղբյուրոյում հանգամանորեն քննարկել ժամանակակից կադրային քաղաքականության հասունացած հարցերը։*

*Ընկերնե՛ր, հանրագումարի բերելով արվածի արդյունքները, մենք պետք է մշտապես և խորապես վերլուծենք մեր սոցիալ-տնտեսական բոլոր խոշոր ծրագրերի իրականացման ընթացքը, ինչպիսին են, օրինակ, պարենային, էներգետիկ ծրագրերը։*

*Այժմ հատուկ ուշադրություն է պահանջում նոր, տասներկուերորդ հնգամյակի մշակումը։ Պակաս կարևոր չէ մոտակա տասնամյակներում երկրի զարգացման հանգուցային պրոբլեմների և հեռանկարների սահմանումը։ Չէ որ մենք պատրաստվում ենք XXVII համագումարի քննարկմանը ներկայացնել կուսակցության ծրագրի նոր խմբագրությունը։ Եվ ահա հարկավոր է ո՛չ միայն ընդհանուր տեսական պատշաճ հիմք ստեղծել դրա համար, այլև այն օրգանապես շաղկապել լավ հիմնավորված տնտեսական պլանների ու կանխատեսումների հետ։ Հենց դա էլ հնարավորություն կընձեռի տալու զարգացած սոցիալիզմի կատարելագործման և դեպի կոմունիզմ աստիճանական առաջընթացի օբյեկտիվ, ռեալիստական պատկերը։*

*Այնպես որ, ընդառաջ գնալով XXVII համագումարին, մենք պետք է հաստատուն գաղափարական հիմք ստեղծենք։ Այդ աշխատանքում լավագույն ողջերթը կարող են լինել լենինյան այն խոսքերը, որ «ավելի ընդհանուր, ավելի լայն կամ ավելի հեռուն գնացող հայացքներ այժմ մեզ համար կրկնակի անհրաժեշտ են»։*

*Այո՛, մենք պետք է զգալիորեն ակտիվացնենք կուսակցության կոլեկտիվ միտքը։ Ընդ որում ո՛չ միայն ընդհանուր տեսական, այլև քաղաքական միտքը։ Տեսություն՝ հարստացած նոր փորձով և փորձ՝ ստեղծագործաբար իմաստավորված մարքս-լենինյան տեսության լույսով։ Դա միշտ էլ եղել և մնում է որպես մեր կուսակցության ուժի կարևորագույն աղբյուրը։*

*Ընկերնե՛ր, այսօր պլենումում քննարկվում էին այնպիսի հարցեր, որոնք հուզում են յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու։ Մենք ընդունում ենք ճիշտ որոշումներ։ Պլենումի բոլոր մասնակիցների վրա մեծ պատասխանատվություն է դրվում դրանց բախտի համար։ Այժմ հարկավոր է միացյալ ուժերով, ամբողջ կուսակցության համերաշխ ջանքերով, ողջ ժողովրդի հետ հաստատակամորեն կենսագործել այդ որոշումները։*

(Ճառը լսվեց մեծ ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով):

---

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՏԱԳԱ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է.

1. Լիովին հավանություն տալ Կենտկոմի պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի ճառի մեջ շարադրված՝ ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի հետագա բարելավման, կոմունիստական կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության իրականացման, համաժողովրդական պետականության ու սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման ասպարեզում նրանց դերի բարձրացման հիմնական ուղղությունների վերաբերյալ դրույթներին ու հետևություններին:

2. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, կուսակցության երկրկոմներն ու մարզկոմները, առաջնորդվելով կուսակցության XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների որոշումներով, պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկեն բարձրացնելու սովետական մարմինների կուսակցական ղեկավարման մակարդակը, ձգտելով այն բանին, որ ժողովրդական դեպուտատների յուրաքանչյուր սովետ հաստատակամորեն կատարելագործի իր գործունեության բովանդակությունն ու ոճը, արդյունավետորեն իրականացնի ՍՍՀՄ սահմանադրությամբ ամրակայված իր հնարավորություններն ու լիազորությունները:

Հետևողականորեն բարձրացնել սովետների դերը տնտեսական շինարարության մեջ, պետական պլանների կատարման, սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացման ոլորտում, տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսայնության ապահովման, կառավարման մեջ տերիտորիալ և ճյուղային հիմունքների ճիշտ զուգորդման գործում: Ուժեղացնել սովետների պատասխանատվությունը աշխատավորների պահանջմունքների առավել լրիվ բավարարման, բնակչության պարենավորման, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնման ու որակի բարձրացման, բնակարանների և սոցիալ-կուլտուրական օբյեկտների շինարարության պլանների կատարման, սպասարկումների ոլորտի, սովետական մարդկանց կյանքի ու կենցաղի բոլոր կողմերի ըստ ամենայնի բարելավման համար:

Կատարելագործել բնակչության շրջանում սովետների քաղդաստիարակչական և կուլտուր-մասսայական աշխատանքը, այն նպատակամղելով սովետական մարդկանց կրթական մակարդակի, աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացմանը, աշխատավորներին դաստիարակել երկրի բոլոր ազգերի ու ազգությունների փոխադարձ հարգանքի ու բարեկամության, սովետական հայրենասիրության ոգով, սոցիալիզմի մեծ նվաճումները պաշտպանելու պատրաստակամության ոգով:

Բարձրացնել ժողովրդական դեպուտատների սովետների կողմից կառավարման մարմինների աշխատանքի վերահսկողության գործունությունը: Հասնել այն բանին, որ սովետները խստապահանջ և անաչառ կերպով գնահատեն

բոլոր մակարդակների պաշտոնատար անձանց և տնտեսական ղեկավարների գործունեությունը, ավելի շատ ուշադրություն նվիրեն ընտրողների պատվիրանների իրականացմանը, վարչական ապարատի կատարելագործմանն ու կրճատմանը, իրավակարգի ամրապնդմանը, սովետական իշխանության օրենքների հեղինակության բարձրացմանը:

Անհրաժեշտ է բարելավել սովետների նստաշրջանների, գործադիր կոմիտեների ու մշտական հանձնաժողովների նիստերի նախապատրաստման ու անցկացման պրակտիկան, դրանք առավել լրիվ օգտագործել առկա ռեզերվները բացահայտելու, թերությունները քննադատելու, համակողմանիորեն հիմնավորված որոշումներ մշակելու համար: Առավել լայնորեն կիրառել դեպուտատական հարցապնդումները: Հաստատակամորեն արմատախիլ անել ձևամոլության փաստերը, ըստ ամենայնի ամրապնդել սովետների կապերը մասսաների հետ:

3. Կուսակցական կոմիտեներին՝ բարելավել սովետական կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակման գործը, ապահովել կուսակցական ու սովետական մարմինների ֆունկցիաների հստակ սահմանազատումը: Բարձրացնել սովետների դեպուտատներ ընտրված կոմունիստներին ներկայացվող պահանջկոտությունը: Կոմունիստները կոչված են օրինակ ծառայելու դեպուտատական պարտականությունների կատարման գործում, աշխատավորների պահանջմունքների նկատմամբ ուշադիր վերաբերմունք ցուցաբերելու ասպարեզում, իրենց շուրջը համախմբեն բոլոր ժողովրդական ընտրյալներին, խթանեն և ուղղություն տան նրանց ստեղծագործական նախաձեռնությանը: Հաստատակամորեն զարգացնել սովետների ու նրանց գործադիր մարմինների կուսակցական խմբերի ու կուսակցական կազմակերպությունների ակտիվությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը գտնում է, որ ժողովրդական դեպուտատների գերագույն և տեղական սովետների գործունեության բոլոր կողմերի զարգացումը, օրենսդրության, կառավարման ու վերահսկողության միասնության լենինյան սկզբունքը նրանց կողմից անշեղորեն իրականացնելը, պետության գործերի շահամետ կառավարման մեջ միլիոնավոր աշխատավորների լայնորեն ներգրավելը համակուսակցական կարևորագույն խնդիր է:

## ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը

# ՀԱՆՐԱԿՐԹԱԿԱՆ ԵՎ ՊՐՈՖԵՍԻՈՆԱԼ ԴՊՐՈՑԻ ՌԵՖՈՐՄԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկ. Մ. Վ. Զիմյանինի զեկուցումը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն նշում է հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի՝ որպես զարգացած սոցիալիստական հասարակության պլանաչափ, համակողմանի կատարելագործման կարևոր բաղկացուցիչ մասի, քաղաքական, սոցիալ-տնտեսական ու գաղափարախոսական մեծ նշանակությունը:

ՍՄԿԿ Կենտկոմի «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունները» նախագծում մշակված է արդի պայմաններում երիտասարդության ուսուցման ու դաստիարակության, նրան կյանքի ու աշխատանքի նախապատրաստելու գիտականորեն հիմնավորված կոնցեպցիա: Դրանում զարգացվել են միասնական, աշխատանքային, պոլիտեխնիկական դպրոցի մասին լենինյան գաղափարները, նշված է ժողովրդական կրթության



բնագավառում կուսակցության ստրատեգիական գիծը՝ XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան և 1984 թվականի փետրվարյան պլենումների հիմնադրույթներին համապատասխան:

Ռեֆորմը կոչված է հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի աշխատանքը բարձրացնել որակապես նոր մակարդակի, վերացնել դրա գործունեության մեջ առկա թերությունները, ապահովել աշակերտների կողմից գիտությունների հիմունքներին խորապես տիրապետելը, նրանց մեջ կայուն կոմունիստական համոզմունքներ, աշխատասիրություն, բարոյական մաքրություն ձևավորելը, նրանց՝ մեր սոցիալիստական բազմազգ հայրենիքի հանդեպ սիրո և այն պաշտպանելու պատրաստակամության ոգով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելը: Ռեֆորմի իրականացումը հնարավորություն կընձեռի արմատապես բարելավելու աշակերտների աշխատանքային դաստիարակությունը և մասնագիտական կողմնորոշումը՝ ուսումը արտադրողական աշխատանքի հետ շաղկապելու հիման վրա, որակյալ բանվորական կադրերի պատրաստումը պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում, երիտասարդության ընդհանուր միջնակարգ կրթությունը լրացնելու ընդհանուր պրոֆեսիոնալ կրթությամբ:

Համաժողովրդական քննարկման ընթացքում Կենտկոմի նախագիծը միահամուռ հավանության ու պաշտպանության արժանացավ: Դրա քննարկմանը նվիրված ժողովներին մասնակցեց 120 միլիոն, ելույթ ունեցավ 7 միլիոն մարդ: Դպրոցի ռեֆորմի վերաբերյալ ծավալուն նյութեր տպագրվեցին մամուլում: Այդ հարցի շուրջը աշխատավորների հազարավոր նամակներ ստացվեցին կուսակցական և սովետական մարմիններում: Նախագծի քննարկումը նոր ուժով ցուցադրեց սոցիալիստական կարգերի իսկական դեմոկրատիզմը, կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունը:

ՍՄԿԿ Կենտկոմը խորին շնորհակալություն է հայտնում այն բանվորներին ու կոլտնտեսականներին, մասնագետներին ու գիտնականներին, մանկավարժներին ու սովորողներին, բոլոր սովետական մարդկանց, որոնք ակտիվ մասնակցել են հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների քննարկմանը, պաշտպանել ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը, արել իրենց կոնկրետ առաջարկություններն ու դիտողությունները:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է.

1. Հիմնականում հավանություն տալ «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղություններին», որոնք վերջնականապես մշակվել են, հաշվի առնելով համաժողովրդական քննարկման ընթացքում ստացված առաջարկություններն ու դիտողությունները:

Ամբողջովին պաշտպանել ժողովրդական կրթության զարգացման հարցերի վերաբերյալ այն ծրագրային դրույթներն ու հետևությունները, որ բովանդակում է պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառը, և դրանք դնել կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների գործունեության հիմքում: Այդ աշխատանքում ելնել այն բանից, որ ժողովրդի կրթվածության ու կուլտուրայի բարձրացումը երկրի գաղափարաքաղաքական, տնտեսական ու պաշտպանական պոտենցիալի ըստ ամենայնի ամրապնդման, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, կոմունիզմի ուղիով սովետական հասարակության հաջող առաջընթացի կարևորագույն նախադրյալն է:

2. Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների հարցը ներկայացնել ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի առաջին նստաշրջանի քննարկմանը:

3. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմնե-

րին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, մինիստրություններին ու գերատեսչություններին, սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական մարմիններին՝ կազմակերպչական ու քաղմասսայական լայն աշխատանք ծավալել «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների» իրականացման համար:

Հաշվի առնելով ազգային առանձնահատկությունները ու տեղական պայմանները, դպրոցի ռեֆորմի հիմնական միջոցառումները իրականացնել փուլ առ փուլ, տասնմեկերորդ—տասներկուերորդ հնգամյակների ընթացքում (1984—1990 թվականներին):

Յուրաքանչյուր հանրապետությունում, երկրամասում, մարզում, քաղաքում ու շրջանում մշակել և համապատասխան կուսակցական կոմիտեների պլենումներում ու ժողովրդական դեպուտատների սովետների նստաշրջաններում հաստատել ռեֆորմի իրականացման կոնկրետ պլաններ: Անհրաժեշտ է արդեն ընթացիկ տարում իրական քայլեր կատարել ուսումնադաստիարակչական պրոցեսի, դպրոցականների աշխատանքային ուսուցման և մասնագիտական կողմնորոշման կատարելագործման նպատակով: Լավ նախապատրաստել և 1986 թվականից կազմակերպված սկսել աստիճանական անցումը երեխաների ուսուցմանը վեց տարեկանից:

Կուսակցական կոմիտեներին՝ ապահովել բոլոր սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական մարմինների, դպրոցի և աշխատավորական կոլեկտիվների կոորդինացված գործողությունները ռեֆորմի իրականացման նպատակով, բարձրացնել ուսումնական հաստատությունների կուսկազմակերպությունների ղեկավարման մակարդակը, խորիմացությամբ լուծել կրթության զարգացման հասունացած հարցերը: Ավելի շատ ուշադրություն նվիրել մատաղ սերնդի հասարակական ու ընտանեկան դաստիարակության հարցերին:

Կենտկոմի պլենումը նշում է, որ դպրոցի ու ժողովրդական ուսուցչի նկատմամբ հոգատարությունը կուսակցական և պետական կարևորագույն խնդիր է: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ է համարում էապես բարձրացնել ուսուցիչների և ժողովրդական կրթության մյուս աշխատողների աշխատավարձը:

4. ՍՍՀՄ լուսավորության մինիստրությանը, ՍՍՀՄ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեին, ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությանը՝ մշակել և իրականացնել «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների» իրականացման կոմպլեքսային միջոցառումներ: Վճռականորեն հաղթահարել նեղ գերատեսչական մոտեցումը գործի նկատմամբ, ձևամոլության ու բյուրոկրատիզմի դրսևորումները ժողովրդական կրթության ղեկավարման գործում, կատարելագործել աշխատանքի ոճը: Ավելի շատ ձեռներեցություն, հաստատակամություն և գործարարություն հանդես բերել դպրոցի գործունեության բոլոր կենսական հարցերը լուծելիս: Առանձնակի ուշադրություն նվիրել դպրոցների և պրոֆտեխուսումնարանների դիրեկտորների հետ տարվող աշխատանքին: Բարձրացնել մանկավարժական կադրերի պատրաստման մակարդակը, կատարելագործել դասատուների որակավորման բարձրացման և ատեստավորման համակարգը:

Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ղեկավարումը բարելավելու, երիտասարդ սերունդների կրթության և դաստիարակության բնագավառում միասնական պետական քաղաքականություն վարելու նպատակով ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, ժողովրդական դեպուտատների երկրամասային և մարզային, քաղաքային և շրջանային սովետների գործկոմներին առնե-



թեր ստեղծել ժողովրդական կրթության միջգերատեսչական հանձնաժողովներ: ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին՝ եռամսյա ժամկետում մշակել հանձնաժողովների կանոնադրություն:

5. Միութենական և ինքնավար հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործկոմներին՝ բարձրացնել ժողովրդական կրթության ղեկավարման մակարդակը, ամրապնդել լուսավորության նյութական բազան, ապահովել դպրոցների ու պրոֆտեխուսումնարանների շինարարության, դպրոցական շենքերի ու կառույցների նորոգման պլանների ժամանակին կատարումը, բարելավել դպրոցների մատակարարումը անհրաժեշտ գույքով, ուսումնադիտողական պիտույքներով: Մշտական հոգատարություն ցուցաբերել մանկավարժական կադրերի, նրանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման նկատմամբ:

Սովորողների աշխատանքային ուսուցման, դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման դրվածքի բարելավման նպատակով յուրաքանչյուր դպրոցի և պրոֆտեխուսումնարանի կցել բազային ձեռնարկություն, կազմակերպություն, հիմնարկություն:

6. ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների մինիստրություններին ու գերատեսչություններին՝ անհրաժեշտ պայմաններ ստեղծել ենթագերատեսչական ձեռնարկություններում, կազմակերպություններում ու հիմնարկներում սովորողների աշխատանքային ուսուցման համար: Այդ նպատակով հատկացնել սարքավորումներ, աշխատատեղեր, որակյալ կադրեր, հումք և նյութեր, ապահովել սովորողների աշխատանքի հստակ կազմակերպում: Բազային ձեռնարկությունների ղեկավարները ուսումնական հաստատությունների դիրեկտորների հետ մեկտեղ անձնական պատասխանատվություն են կրում դըպրոցականների աշխատանքային ուսուցման, նրանց աշխատանքի անվտանգ պայմանների համար:

7. ՀամԼԿԵՄ Կենտկոմին, տեղական կոմերիտական մարմիններին՝ միջոցներ ձեռնարկել հանրակրթական դպրոցներում, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում և տեխնիկումներում կոմերիտական կազմակերպությունների գործունեությունն արմատապես բարելավելու համար: Կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքի ծանրության կենտրոնը փոխադրել անմիջականորեն դպրոց և դասարան: Ուսուցիչներին օգնել ուսումնադաստիարակչական աշխատանքում, դպրոցների կոմերիտական կազմակերպությունների աշխատանքը կազմակերպել ինքնուրույնության սկզբունքներով: Բոլոր ջանքերը պետք է կենտրոնացված լինեն այն բանին, որ դաստիարակվեն կոմունիզմի համոզված մարտիկներ, հայրենասերներ ու ինտերնացիոնալիստներ, սովորողներին պատվաստվեն քաղաքացիական և բարոյական բարձր հատկանիշներ, կոլեկտիվիզմ, աշխատասիրություն, ուսման նկատմամբ պատասխանատու վերաբերմունք, մեր ապրելակերպին խորթ հայացքների ու ճաշակների նկատմամբ անհանդուրժողականություն: Սովորող երիտասարդությանն ավելի լավ նախապատրաստել կոմերիտմիության մեջ ընդունվելուն:

Կոմերիտմիության կոմիտեներին՝ ավելի մեծ ուշադրություն նվիրել հոկտեմբերիկներին, պիոներական կազմակերպություններին, ավելի ակտիվ մասնակցել արտադպրոցական հիմնարկություններում և երեխաների ու դեռահասների բնակության վայրերում դաստիարակչական աշխատանքի կազմակերպմանը, պաշտպանել սովորողների օգտակար նախաձեռնությունները: Կատարելագործել երիտասարդ ուսուցիչների ու պիոներական ջոկատավարների հետ տարվող աշխատանքը:

8. ՀԱՄԿԽ-ին, արհմիությունների կենտկոմներին, տեղական արհմիութենական մարմիններին՝ ըստ ամենայնի բարելավել ուսումնական հաստատությունների արհմիութենական կազմակերպությունների աշխատանքը, բարձ-

բացնել դրանց դերը մանկավարժական կոլեկտիվների ստեղծագործական ձեռներեցության և ակտիվության զարգացման գործում, նպաստել առաջավոր փորձի տարածմանը։ Հոգ տանել մանկավարժների աշխատանքի ու հանգստի պայմանների, կուլտուրական սպասարկման, առողջարանային բուժման բարելավման մասին։ Կատարելագործել պիոներական ճամբարների, դպրոցականների աշխատանքի ու հանգստի ճամբարների, նրանց աշխատանքային միավորումների գործունեությունը։ Երեխաների հետ տարվող աշխատանքի համար ավելի արդյունավետ օգտագործել առկա նյութական բազան՝ մշակույթի պալատները, ակումբները, գրադարանները, մարզական կառույցները։

9. Կենտրոնական, հանրապետական, տեղական թերթերի ու հանդեսների, հեռուստատեսության և ռադիոյի խմբագրություններին՝ աշխատավորներին լայնորեն պարզաբանել ռեֆորմի վեհ նպատակներն ու մարդասիրական իմաստը, ցույց տալ դրա նշանակությունը մեր հասարակության բազմակողմանի առաջադիմության համար։ Սիստեմատիկաբար լուսաբանել կուսակցական և սովետական մարմինների աշխատանքը հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի իրականացման ուղղությամբ, պրոպագանդել ուսումնական հաստատությունների կուսակցական կազմակերպությունների ու կոլեկտիվների լավագույն փորձը, սովետական ուսուցչության անձնվեր աշխատանքը։

Սովորող երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում դպրոցին մեծ օգնություն ցույց տալու են կոչված ստեղծագործական միությունները, գրողները, նկարիչները, կոմպոզիտորները, թատրոնի և կինոյի գործիչները, մշակույթի հիմնարկությունների աշխատողները։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հաստատ վստահություն է հայտնում, որ հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի իրականացումը կդառնա ամբողջ կուսակցության և ժողովրդի կենսական գործը, կնպաստի մատաղ սերունդների ուսուցման և կոմունիստական դաստիարակության հետագա բարելավմանը, մեր հասարակության տնտեսական և սոցիալական առաջընթացի արագացմանը։

---

# ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ

## ՄՈՍԿՎԱՅԻ «ՄՈՒՐՃ ՈՒ ՄԱՆԳԱՂ» ՄԵՏԱԼՈՒՐԳԻԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԻ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՀԵՏ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԺԱՄԱՆԱԿ

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Բարձր եմ գնահատում ձեզ հետ հանդիպելու հնարավորությունը։ Չէ՞ որ դուք հանդիսանում եք երկրի էկոնոմիկայի զարգացումն արագացնելու համար մղվող պայքարի առաջավոր գծում կանգնած բանվոր դասակարգի խոշոր ջոկատը։*

*Հասարակական-քաղաքական այն մթնոլորտի համար, որի մեջ ապրում և աշխատում է մեր ժողովուրդը, այս օրերին առանձնապես բնորոշ են հասունացած հարցերի լուծումների ստեղծագործական կոլեկտիվ որոնումը, գործարարությունը, խստապահանջությունը։ Կյանքի բոլոր բնագավառներում տեղի ունեցող բարերար վերափոխումները համաժողովրդական պաշտպանություն են ստանում։*

*Այդ մթնոլորտի ամրապնդմանն ու զարգացմանն են նպատակամղված ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան ու ապրիլյան պլենումների և ՍՍՀՄ տասնմեկերորդ գումարման Գերագույն սովետի առաջին նստաշրջանի որոշումները։ Դրանք կողմնորոշում են դեպի ներդաշնակ, լարված աշխատանքը կոմունիստական շինարարության բոլոր ուղղություններում։*

*Մեր հանդիպումը տեղի է ունենում Մայիսի մեկի նախօրեին։ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, սովետական կառավարության անունից ձեզ և բոլոր սովետական մարդկանց ջերմորեն շնորհավորում եմ աշխատանքի ու խաղաղության այդ մեծ տոնի առթիվ։* (Երկարատև ծափահարություններ)։

*Խորապես շնորհակալ եմ ձեր սրտաբացության և անկեղծության համար։ Դրանում տեսնում եմ անսասան վստահությունը հարազատ կոմունիստական կուսակցության, նրա Կենտրոնական կոմիտեի նկատմամբ։*

*Աշխատավոր մարդկանց հետ անմիջականորեն շփվելու լենինյան ավանդույթը միշտ էլ ապրում է մեր կուսակցության մեջ։*

*Հիշում եմ, թե ինչպիսի զորեղ տպավորություններով էր համակվել Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը Մոսկվայի հաստոցաշինարարների հետ հանդիպում ունենալուց հետո։ Նա բազմիցս բանվորների դատողություններին և գործարանում նրանց արտահայտած մտքերին էր դիմում կյանքի առաջադրած ոչ հասարակ խնդիրների վրա մտորելիս։*

*Այսպիսի հանդիպումները բացառիկ կարևոր են, և ես կասեի՝ շատ օգտակար։ Ահա և այսօր մեր զրույցը հնարավորություն է տալիս առավել լրիվ զգալ երկրի աշխատանքային երակազարկը։ Մի շարք հարցեր, որոնք թվում է, թե հայտնի էին, այժմ ավելի պարզորոշ դարձան։*

*Ընկերներ, ձեր եռակի շքանշանակիր ձեռնարկության անվան մեջ միավորված են սովետների երկրի պատմական խորհրդանիշերը՝ մանգաղն ու մուրճը։ Գործարանի բանվորները եղել են հեղափոխական մարտիկների և աշխատավորության պետության կառուցողների առաջավոր շարքերում։ Սո-*

Պրոբլեմը մի կողմից որակի հետագա բարձրացումն է, այն առաջադիմական մետաղե արտադրատեսակների թողարկման ավելացումը, որոնք առայժմ անբավարար քանակությամբ են արտադրվում։ Իսկ մյուս կողմից՝ մետաղի ծախսման պակասեցումն է, նրա կորուստների վերացումը ինչպես բուն մետալուրգիայում, այնպես էլ մետաղ սպառողների մոտ։ Դա հատկապես վերաբերում է մի այնպիսի թանկ արժեցող արտադրանքի, որպիսին թողարկում է «Մուրճ ու մանգաղը»։

Ասվածը լիովին վերաբերում է վառելիքի խնայողությանը, էներգիայի տնտեսմանը։ Ցավոք, տարածում է գտել, այդ թվում նաև մեր պրոպագանդայի մեջ, այն արտահայտությունը, թե երկիրն անսահմանորեն հարուստ է ածխով, հանքաքարով, նավթով, գազով։

Իրականում դա այդքան էլ հասարակ բան չէ։ Մեր պաշարներն իրոք քիչ չեն։ Բայց բնության կողմից դրանք, ինչպես հայտնի է, չեն վերականգնվում։ Եվ դրանց հանույթն էլ գնալով թանկանում է։ Բացի դրանից, ռեսուրսները հնարավոր է պահպանել նաև գալիք սերունդների համար, ուստի և դրանք պետք է վերցնել խելացիորեն, օգտագործել ռացիոնալ կերպով։

Առաջին հերթին հարկավոր է առավելագույնս արագացնել էներգախնայողական տեխնիկայի ու տեխնոլոգիայի մշակումն ու արմատավորումը։ Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ սերիական շատ շարժիչներ, էլեկտրակայանների կաթսայատներ 15—20 տոկոսով շատ վառելահեղուկ են ծախսում, քան սովետական գիտնականների և կոնստրուկտորների ստեղծած լավագույն նմուշները։ Իսկ սև մետալուրգիայի մեջ մետաղը տաքացնելիս վառելիքի օգտագործման գործակիցը միջին հաշվով մեկուկես անգամ ցածր է, քան առաջավոր ձեռնարկություններում։

Մետաղը, վառելիքը, էներգիան, մյուս բոլոր ռեսուրսները խնայելու անհրաժեշտության մասին ճիշտ խոսքեր շատ են ասվել, բայց բնավ միշտ չէ, որ դրանք ամրապնդվում են կոնկրետ գործերով։ Ամենուրեք և ամեն ինչում շոշափելի արդյունքներ կտան խնայողության ռեժիմի ուժեղացման կուրսի կիրառման մեջ յուրաքանչյուրի՝ բանվորից մինչև դիրեկտորի, ձեռներեցությունը, անձնական ավանդը միայն։

Ընկերներ, ինձ հայտնի է, որ դուք կուտակել եք աշխատանքի բրիգադային կազմակերպման լավ փորձ։

Աշխատանքի կազմակերպման ու խթանման այդ ձևը կյանքի ուղեգիր ստացավ առաջավոր կոլեկտիվների նախաձեռնությամբ։ Այդ ձևը ծնվեց հենց մասսաների շրջանում և հանդիսանում է ժողովրդի սոցիալական ստեղծագործության արդյունքը։

Մշակված է աշխատանքի արտադրողականության բարձրացման արդյունավետ, մեր կարգերին հատուկ ուղի։ Գտնված է աշխատավորի անձնական շահերի, կոլեկտիվի ու հասարակության շահերի միացման ճիշտ մեթոդ։ Իսկ սա սոցիալիստական շինարարության արմատական հարցերից մեկն է թե՛ տնտեսական, թե՛ սոցիալ-քաղաքական և թե դաստիարակչական տեսակետից։

Բանվորների ու կոլտնտեսականների քաղաքական բարձր գիտակցականությունը, նրանց աշխատանքի կուլտուրան այսպես են օգնում ձևավորելու զարգացած սոցիալիզմի հասարակական հարաբերությունների էական տարրերը։

Սոցիալիստական աշխատանքի հերոս Բորիս Վասիլևիչ Զուկանովը այստեղ լավ ասաց, որ բրիգադներում «իմը» և «մերը» հասկացությունները, անձնականն ու հանրայինը միաձուլվում, վերածվում են դասակարգային գիտակցության, հայրենասիրական պարտքի և կոլեկտիվ վարպետության համաձուլվածքի։

Սև մետալուրգիայի ասպարեզում բրիգադներում միավորված է, ինչպես ինձ ասացին, բանվորների երեք քառորդը։ Սա ինքնըստինքյան վատ չէ։ Բայց ահա, տնտհաշվարկի արմատավորումից հետո, այն բանից հետո, երբ անցում



կատարվեց աշխատանքն ըստ վերջնական արդյունքների գնահատելուն՝ հաշվի առնելով յուրաքանչյուրի անձնական աշխատանքային ներդրումը, մետալուրգները մի քիչ ետ են ընկել։

Իհարկե, կան պրոբլեմներ, որոնք պետք է լուծվեն մինիստրությունների, գերատեսչությունների, ճյուղային արհմիությունների մակարդակում։ Օրինակ, միանգամայն ճիշտ էր այստեղ առաջադրված հետևյալ հարցը. «Ինչո՞ւ կոմպլեքսային բրիգադի աշխատանքը կազմակերպող հերթափոխային վարպետը չի ընդգրկվում այդ բրիգադի կազմի մեջ։ Իսկ նրա աշխատավարձը այնպես չի հաշվարկվում, ինչպես բրիգադի անդամինը»։

Այժմ աշխատանքի պետական կոմիտեն այս հարցի վերաբերյալ տնտեսափորձ է անցկացնում։ Բայց կարծում եմ, որ այնտեղ, որտեղ պայմաններ կան, պետք է ոչ թե սպասել տնտեսափորձի արդյունքներին, այլ համարձակորեն ձեռնարկել կյանքի հուշած անհրաժեշտ միջոցառումները։ Ընդսմին, իհարկե, չպետք է մոռանալ, որ ոչ ոք չի վերացնի վարպետի պատասխանատվությունը աշխատանքի ու արտադրության կազմակերպման համար, նույնիսկ երբ նա մտնի բրիգադի կազմի մեջ։

Գործարանային միջավայրում չի կարելի չհիշել մի այնպիսի վառ ու ճշգրիտ հասկացություն, ինչպիսին է կադրային բանվորը։ Խղճի մտոք ասած, այդ հասկացությունը մեզանում որոշ տեղերում մոռացության է մատնվում։ Իսկ չէ՞ որ երբ մարդ արտաբերում է այդ բառերը, նրա հայացքի առջև պատկերանում է իսկական աշխատավորի կերպարը։ Փորձով իմաստնացած վարպետի կերպարը։ Ձեռնարկության պատրիոտի, երիտասարդ հերթափոխի դաստիարակի կերպարը, շիտակ ու սկզբունքային մարդու կերպարը։ Կադրային բանվորներն ամեն մի արտադրության ոչ միայն հենարանն են։ Նրանք մեր բանվոր դասակարգի պարծանքն են։ Պետք է թանկ գնահատել նրանց, հենվել նրանց վրա։ Պետք է բարձրացնել ճարտար աշխատանքի հեղինակությունը, այնպիսի որակյալ գործի հեղինակությունը, որի մասին ասում են, թե դա երկու դար կապրի։

1919 թվականին Մոսկվայում, Մոսկվա—Սորտիրովոչնայա դեպոյի բոլշևիկ բանվորները տվեցին ընդհանուրի բարօրության օգտին հարվածային անշահախնդիր աշխատանքի օրինակ։ Վաթսունհինգ տարի անց այս տարվա համամիութենական կոմունիստական շաբաթօրյակին մասնակցեց ավելի քան 157 միլիոն սովետական մարդ։ Այժմ այսպիսին են մեր կյանքում կոլեկտիվիստական սկզբունքների հաստատման ծավալն ու մասշտաբը։

Վիկտոր Վասիլևիչ Գրիշինը ինձ պատմել է, որ մոսկվացիները այս տարվա շաբաթօրյակի ժամանակ աշխատել են առանձնահատուկ տրամադրությամբ, խանդավառությամբ, ստախանովաբար։ Այդպես է եղել ամենուրեք։ Սովետական մարդիկ ամբողջ սրտով են ընկալել կուսակցության կոչը՝ իրենց աշխատանքը դիտելու որպես հայրենասիրական պարտքի կատարում։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի ու կառավարության անունից ուզում եմ շատ կարճ և սրտանց ասել. շնորհակալություն, ընկերներ, թե՛ ձեր կոլեկտիվին և թե՛ բոլոր աշխատավորներին։ (Երկարատև ծափահարություններ)։

Այս դահլիճում վետերանների հետ միասին տեսնում եմ երիտասարդ շատ դեմքեր։ Նրանց այստեղ է բերել «Մուրճ ու մանգաղ» գործարանի պրոլետարական անթառամ ջահելության շունչը, գործարան, որը վերջերս նշեց իր հարյուրամյա հոբելյանը։ Ձեռնարկության ղեկավարները ինձ հաղորդեցին, որ այստեղ աշխատողների գրեթե մեկ երրորդը կազմում են երիտասարդները։ Վերջին տարիներին գործարանը երիտասարդացել է։ Սա նշանակալից փաստ է։

Դա ի՞նչ է վկայում։ Կատարված վերակառուցման և արդիականացման շնորհիվ ձեր ձեռնարկությունում աշխատանքը ավելի գրավիչ է դարձել երիտասարդների համար։ Վերակառուցումը, որը առաջին հայացքից զուտ տեխնիկական գործ է, այսպիսով սոցիալական կարևոր երանգ է ձեռք բերում։

Օգտվելով առիթից, կցանկանայի ընդգծել հետևյալը։ Այժմ մենք ձեռնամուխ ենք լինում դպրոցական ռեֆորմի իրականացմանը։ Ռեֆորմի հաջող իրագոր-

ծումը մեծապես պայմանավորված կլինի արտադրական կոլեկտիվների շահամետ մասնակցությամբ, «դպրոց-ձեռնարկություն» համագործակցության ամրապնդմամբ։ Դեռահասների լավ կազմակերպված աշխատանքը, արտադրության մեջ հստակ ռիթմը և կարգուկանոնը, բանվորական միաբանության, կոլեկտիվիզմի ոգին պետք է երիտասարդներին գործնականում սովորեցնեն կյանքի գիտությունը։ Պետք է նրանց օգնեն մասնագիտության ընտրության և տիրապետման գործում, քաղաքացիական բարձր հատկանիշների կազմավորման գործում։

Հենց աշխատանքը, և ոչ թե նրա մասին դատողությունները, հայրենիքի բարօրության օգտին կատարվող աշխատանքն է հանդիսանում մարդու քաղաքական գիտակցականության ամենափորձված չափանիշը։

Մենք բոլորս գիտենք, որ երիտասարդը չի սիրում, երբ իր հետ խոսում են միայն խրատներ կարդալու լեզվով։ Եվ մենք էլ երիտասարդ տարիներին չենք հիացել հորդորներով ու քարոզներով։ Վստահություն և բարձր պատասխանատվություն հանձնարարված գործի համար՝ ահա թե ամենից լավ ինչն է դաստիարակում մարդուն։

Ծանոթանում ես արդյունաբերության փորձառու շատ ղեկավարների հետ և իմանում, որ պատերազմի ահեղ տարիներին պատանյակը կանգնել է հաստոցի մոտ, տասնվեց տարեկան ժամանակ եղել բրիգադավար, իսկ քսանհինգ տարեկան ժամանակ՝ եղել արտադրամասի պատասխանատու։ Այդպիսի դպրոցը ոչ մի բանով չի փոխարինվի։

Աշխատանքի դպրոցը, կյանքի դպրոցը, մասսաների շրջանում քաղաքական աշխատանքի դպրոցը ամենահուսալի դպրոցն է։ (Ծափահարություններ):

Բոլշևիկյան կուսակցությունն անվանելով ապագայի կուսակցություն, Լենինը դա նաև կապում էր կուսակցության մեջ երիտասարդ, եռանդուն ուժերի մշտական ներհոսի հետ։ Կուսակցության մեջ ընդունվողների ընդհանուր թվի դրեթե երեք քառորդը այսօր գալիս է կոմերիտմիությունից։

Սա արժանի համալրում է։ Կոմերիտմիությունը կուսակցության հուսալի ռեզերվն է և նրա մարտական օգնականը։ Կուսակցությունը երիտասարդ լենինյանների միությանը վստահել և վստահում է պատասխանատու գործեր։ Եվ գիտե, որ կոմերիտմիության վրա կարելի է հույս դնել։

Ընկերնե՛ր, ես արդեն առիթ ունեցել եմ խոսելու էկոնոմիկայի զարգացման այն բարդությունների մասին, որոնց մենք բախվեցինք 70—80-ական թվականների սահմանագծում։ Կենտկոմը, մեր կուսակցությունը, ամբողջ ժողովուրդը աշխատում են մինչև վերջ հաղթահարել այդ բարդությունները և դուրս գալ նոր բնագծեր։ Դրա համար հարկավոր են բարձր արտադրողական աշխատանք, յուրաքանչյուրի տնտեսատիրական շահագրգռությունը արտադրության զարգացմամբ։ Միայն այդ հիման վրա կարելի է բարձրացնել ժողովրդի բարեկեցությունը։

Աշխատավորական լայն զանգվածների կյանքի հետևողական բարելավումը կոմունիստական կուսակցության գլխավոր գիծն է, և ոչ մի բան չի կարող այն սասանել։ (Ծափահարություններ):

Միայն 70-ական թվականների սկզբից բնակչության մեկ շնչին ընկնող իրական եկամուտները աճել են ավելի քան մեկուկես անգամ։ 1983 թվականին ժողովրդական տնտեսության մեջ միջին ամսական աշխատավարձը կազմեց 182 ռուբլի։ Դրանից անհամեմատ ավելի է բարձր որակավորում ունեցող բանվորի վաստակը։ Նա ամսական միջին հաշվով ստանում է 250—300 ռուբլի և նույնիսկ ավելի։

Այժմ յուրաքանչյուր չորս տարում մեր երկրում ավելի շատ բնակարան է կառուցվում, քան կառուցվել է ամբողջ նախապատերազմյան ժամանակաշրջանում։ Յուրաքանչյուր հինգ տարում բարելավվում են ավելի քան 50 միլիոն մարդու բնակարանային պայմանները։

Ավելացվում է բնակչության համար թողարկվող ապրանքների քանակը, ընդլայնվում է սպասարկումների ոլորտը։



Աճում են գյուղատնտեսության աշխատավորների եկամուտները։ Գյուղում կառուցվում են հարմարավետ ու գեղեցիկ ավելի շատ տներ, դպրոցներ, բժշկական հիմնարկներ, ակումբներ, գցվում են ժամանակակից ճանապարհներ։

Սովետական մարդիկ գոհունակությամբ են նշում, որ սկսում է իր պտուղները տալ պարենային ծրագիրը։ Դրա կատարման համար դեռ ամեն ինչ չէ, որ արված է։ Անկեղծ ասած՝ մի շարք շրջաններում դեռ ընդհատումներ կան անասնապահական մթերքների առևտրի ասպարեզում։ Դեռ պետք է շատ աշխատանք կատարվի բնակչության պարենամթերքի մատակարարումը բարելավելու, ժողովրդական սպառման ապրանքների որակը բարձրացնելու համար։

Դուք գիտեք, որ սոցիալական հարցերի լուծմանը հատկացվող հսկայական պետական միջոցներից բացի, շատ ձեռնարկություններ ու միավորումներ արդեն այսօր իրենց տրամադրության տակ ունեն տնտեսական խթանման ազդալի ֆոնդեր։ Դրանք կազմում են ավելի քան 50 միլիարդ ռուբլի։ Այդ ժողովրդական միջոցները պետք է օգտագործել փութաջանորեն, գերադասություն տալով աշխատավորական կոլեկտիվների առաջնահերթ խնդիրներին։

Ինչ մեղքներս թաքցնենք, չէ՞ որ այլ կերպ էլ է լինում։ Երբեմն մեծ գումարներ են ծախսվում երկրորդական գործերի վրա կամ էլ հատկացվում այնպիսի բաների, որոնք հիմա կարելի էր և չանել։

Որոշ տեղական ղեկավարներ, ուղղակի ասենք, տարված են վիթխարամոլությամբ։ Եթե մշակույթի պալատ են կառուցում, ապա անպայման օգտագործելով մարմար, բյուրեղապակի, դրվագազարդումներ։ Եթե գեղարվեստական պաննո են տեղակայում, ապա այնպիսի վիթխարի չափերի, որ, ինչպես ասում են, երկինքն էլ ծածկի։ Դա, ըստ իս, գալիս է գեղեցիկի մասին վաճառականական պատկերացումից։ Իբր՝ տես, թե մենք ով ենք։ (Աշխուժություն դահլիճում):

Ամեն ինչի չափավորն է լավ։ Եվ պետք է միշտ հիշել, որ մանկապարտեզը, նորապսակների համար կառուցվող բնակարանը, արտադրամասում լավ ճաշարանը, գյուղական ակումբը լավագույն դիտողական ագիտացիան են մեր ապրելակերպի օգտին։

Ընկերներ, ձեր գործարանում, ինչպես որ երկրում ամենուրեք, ամենաբարդ, պատասխանատու գործին առաջինը ձեռնամուխ են լինում կոմունիստները։ Հենց դա է ամրապնդում նրանց հեղինակությունը լայն զանգվածների շրջանում։

Կոմունիստական կուսակցությունը ամբողջ ժողովրդի ավանգարդն է։ Բայց իր դասակարգային էությամբ, իր ծրագրային նպատակներով, գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ, այն դերով, որ ՍՄԿԿ-ի մեջ կատարում են բանվորները, նա եղել է և մնում է որպես բանվոր դասակարգի կուսակցություն, բոլշևիզմի փառապանծ ավանդույթներին հավատարիմ կուսակցություն։ (Երկարատև ծափահարություններ):

Դա ապահովում է հեղափոխական հաջորդայնությունը նրա գործունեության մեջ, ներքին ու արտաքին քաղաքականության խստագույն դասակարգային բնույթը։ Դա այն հսկայական աշխատանքի հաջողության գրավականն է, որ մենք անվանում ենք զարգացած սոցիալիզմի կատարելագործում։ Սոցիալիստական շինարարության տարիներին կուսակցությունը դաստիարակել է ղեկավարների, մասսաների իսկական առաջնորդների հիանալի կադրեր։ Բարդ է նրանց աշխատանքը, մեծ է պատասխանատվությունը։ Եվ մարդիկ մեծ հարգանքով են արտահայտվում այդպիսի ընկերների մասին։

Բայց երբեմն կարելի է լսել նաև արդարացի վրդովմունք, երբ խոսք է լինում արտադրության մեջ և կենցաղում որոշ աշխատողների ոչ ճիշտ վարքի դեպքերի մասին։ Նման փաստերը անհանդուրժելի են։ Կենտկոմը խիստ հաշիվ է պահանջում և կպահանջի նրանցից, ովքեր աշխատում են անփութորեն, ոտնահարում են օրենքը, խախտում ՍՄԿԿ-ի կանոնադրությունը։ Մենք այս մասին վճռականորեն ասացինք ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում։ Ուզում եմ մեկ անգամ էլ կրկնել. մեր խստապահանջությունն ու սկզբունքայ-

նությունը չեն թուլանա երբեք՝ ոչ այսօր, ոչ վաղը, ոչ էլ ապագայում։ (Ծափահարություններ)։

Համամիտ եմ ընկեր Ալեքսանդր Պավլովիչ Մոխնևի հետ։ Իր ելույթում նա շատ անկեղծորեն անդրադարձավ սոցիալական արդարության մի այնպիսի կարևոր հարցի, ինչպիսին է հասարակության նկատմամբ իր պարտականությունների անշեղ կատարումը յուրաքանչյուր քաղաքացու կողմից։ Դուք իրավացի եք, Ալեքսանդր Պավլովիչ։ Կան մարդիկ, որ ուզում են ստանալ ամեն ինչ՝ թե այն, ինչ հասնում է, և թե այն, ինչ չի հասնում։ Եվ հաճախ են ստանում։ Իսկ հասարակության հանդեպ իրենց պարտքը մոռանում են։ Ուստի ես լիովին պաշտպանում եմ Մոսկվայի կուսկազմակերպության կողմից կատարվող այն բազմակողմանի աշխատանքը, որն ունի լավ նշանաբան՝ «Պատիվն ու փառքը՝ ըստ աշխատանքի»։ (Երկարատև ծափահարություններ)։

Դուք, ընկերներ, արծարծեցիք կենսական շատ պրոբլեմներ։ Մասնավորապես հետաքրքրվեցիք բնակարանային ծրագրի իրականացման հեռանկարներով։

Զեկուցում եմ ձեզ, որ Կենտկոմի քաղբյուրոն քննարկել է ընթացիկ հնգամյակում բնակարանային շինարարության հարցը։ Պետպլանին, մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է անհրաժեշտ բոլոր միջոցներն ու ռեսուրսները հատկացնել, որպեսզի անպայման կատարվի և գերակատարվի բնակելի տների գործարկման հնգամյա առաջադրանքը, իսկ այդ առաջադրանքը շատ բարձր է։ Ճիշտ է, նամակներ են ստացվում նաև նրանցից, ովքեր ստացել են բնակարաններ, թե դրանք շինված են մի կերպ, կիսատ-պռատ։ Ցավոք, նման բաներ լինում են, և այդպիսի նորաբնակների դառնությունը կարելի է հասկանալ։

Բնակարանների, ապրանքների, սպասարկումների որակի հարցերը ոչ միայն տնտեսագիտական, տնտեսական, այլև սոցիալական հարցեր են։ Դրանք անմիջականորեն շոշափում են միլիոնավոր մարդկանց շահերը։ Իհարկե, բարձր որակը պայմանավորված է շատ ստորոգելիներով։ Եվ, այնուամենայնիվ, դրանց շարքում առաջին տեղերից մեկում կանգնած է գործի նկատմամբ աշխատողի վերաբերմունքը, ես կասեի՝ բանվորի խիղճը։

Մի՞թե կարելի է բնակարանը վատ կառուցել բանվորի, ուսուցչի, բժշկի համար, իր համար, վերջապես՝ իր զավակների համար։

Մենք իրավամբ փառաբանում ենք աշխատանքի հերոսներին, նրանց գիտե ողջ երկիրը։ Բայց չէ՞ որ անտնտեսվարությունը նույնպես ունի իր հասցեն։ Ժամանակն է, որ խոտանարարին դեմքով ճանաչենք։ Որ հայտնի լինի, թե ով է թողարկում վատ արտադրանք։ Եվ անպատասխանատվության համար պետք է խիստ հաշիվ պահանջել։ (Ծափահարություններ)։

Ընկերներ, մեր կարգերի հզորությունը բազմապատիկ ուժեղանում է մասսաների գիտակցականությամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում կուսակցությունն առաջադրեց գաղափարախոսական գործունեության մի ծավալուն կոնցեպցիա, որը տևական նշանակություն ունի։ Պլենումի որոշումները հուժկու ազդակ հանդիսացան գաղափարադաստիարակչական, մասսայական-քաղաքական աշխատանքը բոլոր ուղղություններով կատարելագործելու համար։

Գլխավորն այն է, որ գաղափարախոսական ջանքերի կենտրոնը փոխադրվի աշխատավորական կոլեկտիվ, սկզբնական կուսակցական կազմակերպություն։ Հարկավոր է մեկընդմիշտ հրաժարվել տակավին գոյություն ունեցող իներցիայից, երբ ամբողջ գործունեությունը երբեմն ներփակվում է բուն գաղափարախոսական գերատեսչությունների շրջանակներում, վերածվում երկարաբարակ թղթաբարության և ժամեր տևող նիստերի։

Գաղափարախոսական պրակտիկայում ոչ պակաս, քան այլ ոլորտներում անհրաժեշտ են գործարարություն, կազմակերպվածություն, կատարման հստակ վերահսկողություն և ստուգում, գործուն արդյունքների հասնելու կարողություն։



Օրինաչափ է, ընկերներ, որ այստեղ այսօր արտասանված բոլոր ելույթներն էլ հոգատարությամբ էին տոգորված արարող աշխատանքի նկատմամբ։ Բանվոր դասակարգը իր էությամբ իսկ արարող դասակարգ է։ Ձեր խոսքերն արտացոլում են սովետական ժողովրդի կայուն խաղաղության կամքը։

Չի կարելի չհամաձայնել այն բանի հետ, թե դուք ինչպես եք գնահատում միջազգային իրադրությունը։ Այո, ՍՍՀՄ-ի և սոցիալիզմի մյուս երկրների դեմ այսպես կոչված «խաչակրաց արշավանքի» կազմակերպիչները կցանկանային մեզ ծնկի բերել։ Դա երբեք չի լինի։ (Բուռն ծափահարություններ)։

Մենք տառապանքով հասանք մեր հեղափոխության հաղթանակին, պաշտպանեցինք այն, սոցիալիզմ կառուցեցինք, հիմա էլ կենսագործում ենք երկրի զարգացման, ժողովրդի ապրուստի հետագա բարելավման վիթխարի պլանները։ Մենք մեր աշխարհայացքը, հասարակարգը ոչ ոքի չենք պարտադրում։ Եվ մեզ հարկավոր չեն ուրիշի հողեր։ Սովետական Միությունը անկեղծորեն առաջարկում է միայն մեկ ուղի՝ խաղաղ գոյակցության ուղին, փոխշահավետ միջազգային համագործակցության ուղին։

Միևնույն ժամանակ հասկանալի է, որ ամեն ինչ չէ, որ կախված է մեր բարի կամքից։ Քաղաքականության մեջ ևս մենք հավատում ենք միայն գործերին և ոչ թե խոսքերին։ Սպառազինությունների կրճատումը նշանակում է իրոք փոխադարձ կրճատում։ Միջուկային զենքի վերացումը նշանակում է իրոք վերացում երկու կողմերից էլ։ Եթե ԱՄՆ-ը, ՆԱՏՕ-ն դրան համաձայնեն, ապա մեր պատճառով գործը չի հապաղի։

Սովետական մարդիկ խորապես համոզված են, որ խաղաղությունը կարելի է պահպանել։ Կարելի է իրադարձությունների զարգացումը ետ շրջել առճակատումից դեպի լիցքաթափում։ Մենք պատրաստ ենք երկխոսության, պատրաստ ենք ակտիվորեն համագործակցել այն կառավարությունների ու կազմակերպությունների հետ, որոնք կցանկանան ազնվորեն և կոնստրուկտիվ կերպով աշխատել հանուն խաղաղության։

Իսկ քանի դեռ գոյություն ունի ռազմական ու քաղաքական լարվածություն, քանի դեռ մեր երկրի վրա կախված է ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի պետությունների կողմից սպառնացող հրթիռամիջուկային վտանգը, պետք է վառոդը չոր պահել, միշտ կազմ ու պատրաստ լինել, որպեսզի ուժերի հարաբերակցությունը չփոխվի իմպերիալիզմի օգտին, և մենք ավելի թույլ չգտնվենք։

Սոցիալիստական հայրենիքի անվտանգության նկատմամբ մեր հոգատարությունը հասկանալի է ամեն մի ողջախոհ մարդու։ Յուրաքանչյուր սովետական ընտանիքում երբեք չի կտրվում այն կորուստների ցավը, որ պատճառեց անցած պատերազմը։ Մեր երկիրը 20 միլիոն մարդկային կյանք տվեց իր անկախության համար, համաշխարհային քաղաքակրթությունը ֆաշիստական բարբարոսների ստրկացման սպառնալիքից փրկելու համար։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը հասկանում են իրենց բարձրագույն պատասխանատվությունը ժողովրդի հանդեպ։ 1941 թվականի հունիսը չի կրկնվի։ Ամեն մի ագրեսոր անհապաղ հատուցում կստանա։ Թող սա իմանան բոլորը՝ թե մեր բարեկամները և թե թշնամիները։ (Բուռն ծափահարություններ)։

Միջազգային իրադրությունը սրվելու կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմում ստացվում են շատ նամակներ, որոնց հեղինակները առաջարկում են երկարացնել աշխատանքային շաբաթը, ստեղծել երկրի պաշտպանության ֆոնդ։

Նախ և առաջ, կցանկանայի ի սրտե շնորհակալություն հայտնել այն հազարավոր սովետական հայրենասերներին՝ պատերազմի ու աշխատանքի վետերաններին, երիտասարդ բանվորներին ու կոլտնտեսականներին, կոմունիստներին, անկուսակցականներին, ովքեր դիմել են այդպիսի առաջարկություններով։

Պետք է ասել, որ մեր տնտեսական պոտենցիալը, նոր տեխնիկական միջոցները, որոնք բարձրացնում են պաշտպանության արդյունավետությունը, թույլ են տալիս առանց առաջարկվող միջոցառումների էլ հուսալիորեն ապահովել սովետական պետության և նրա դաշնակիցների անվտանգությունը։

Հետևողականորեն կիրականացվեն նաև երկրի զարգացման և սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման նախատեսված սոցիալ-տնտեսական ծրագրերը։

Ընկերներ, մեր լենինյան կուսակցությունը շուտով կթևակոխի իր XXVII համագումարի անմիջական նախապատրաստության ժամանակաշրջանը։ Ինչպես գիտեք, սպասվում են մասշտաբային, բազմապլան գործեր։

Մենք հարստացած ենք քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի, տնտեսական շինարարության հուսալի փորձով, հենվում ենք կուսակցության ու ժողովրդի միաձույլ համախմբվածության վրա։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի կողմից վարվող կուրսը կշռադատված և ստուգված է, կարելի է ասել, յուրաքանչյուր կոմունիստի մասնակցությամբ։ Կուսակցության քաղաքականությունը պրակտիկ գործերով պաշտպանում են բոլոր սովետական մարդիկ։ Սրանում է այն բանի գրավականը, որ մենք կլուծենք մեր կանխանշած խնդիրները, կհասնենք մեր առաջադրած նպատակներին։ (Երկարատև ծափահարություններ)։

Եվ վերջում՝ մի քանի խոսք անձնական կարգի։

Ձեզանից շնորհակալ եմ սրտաբաց հանդիպման և անկեղծ խոսակցության համար։ Ձեր ջերմ ողջույններն ու բարեմաղթությունները առույգություն, եռանդ են տալիս, ամրապնդում են վստահությունը մեր ընդհանուր աշխատանքի հաջողության նկատմամբ։

Մեկ անգամ էլ սրտաբուխ շնորհակալություն, թանկագին ընկեր մետաղագործներ։ Նոր նվաճումներ եմ մաղթում ձեր դժվարին աշխատանքում։ Մաղթում եմ ամենայն բարիք ձեր կյանքում։ Թող մայիսմեկը պայծառ ու բերկրալի լինի ձեզանից յուրաքանչյուրի համար, ձեր մերձավորների համար։ (Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում)։

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1984 թվականի մայիսի 5-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը։

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի ապրիլյան պլենումի արդյունքները և պլենումի որոշումներից ու պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները» հարցը։

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ժողովրդական դեպուտատների Երևանի քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Մ. Հ. Մուրադյանը, ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Զ. Գ. Անանյանը, բանվորուհի ընկ. Գ. Ծ. Ոսկանյանը, ՀԿԿ Էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Մ. Մխիթարյանը, Արարատի շրջանի Փոքր Վեդի գյուղի կոլտնտեսության կոլտնտեսուհի ընկ. Ք. Ա. Հովհաննիսյանը, Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստր ընկ. Ս. Տ. Հախումյանը, Երևանի պետական համալսարանի ռեկտոր ընկ. Ս. Ա. Համբարձումյանը, «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Ռ. Պ. Ամիրյանը, Երևանի № 15 պրոֆտեխուսումնարանի դիրեկտոր ընկ. Գ. Հ. Օհանջանյանը։

Պլենումը քննարկեց Հայաստանի կոմկուսի Ախուրյանի շրջկոմի հաշվետվությունը ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ուղղությամբ։

Զեկուցումով հանդես եկավ ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Մ. Լ. Մկրտչյանը։

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի քարտուղար ընկ. Ա. Հ. Ստեփանյանը, ՀԿԿ Ապարանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Ճ. Հ. Ալեքսանյանը, Գորիսի շրջանի Վերիշենի սովխոզի ծխախոտագործուհի ընկ. Ս. Ա. Մանվելյանը, «Ռյա-Թազա» թերթի խմբագիր ընկ. Մ. Ա. Մստոյանը, ժողովրդական դեպուտատների Լենինականի քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Է. Մ. Կիրակոսյանը։

Քննարկված հարցերի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ։

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Վ. Ի. Պոլյակովը։

---

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ

Ընկերնե՛ր։

Ինչպես հայտնի է, ապրիլին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։ Կենտկոմի պլենումը կրկին ցուցադրեց կուսակցության քաղաքականության հաջորդայնությունն ու հետևողականությունը, քննության առավ մեր հասարակության համար բացառիկ կարևոր հարցեր, հիմնվելով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների վրա, նշեց մեր երկրի հետագա տնտեսական, սոցիալ-քաղաքական զարգացման ուղղությունները, սովետական պետության արտաքին քաղաքական կուրսը։

Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոն։ Ճառում շարադրված է ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքը բարելավելու, ժողովրդական կրթությունը զարգացնելու, երկրի առջև ծառացած խոշորածավալ խնդիրները հաջողությամբ լուծելու, մեր հայրենիքի համակողմանի առաջընթացն արագացնելու պրակտիկ գործողությունների հստակ ծրագիրը։ Նրա բովանդակած դրույթներն ու հետևությունններն ամբողջությամբ ու լիովին հավանության արժանացան պլենումի կողմից, որը որոշեց դրանք դնել բոլոր կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների գործունեության հիմքում։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի առաջարկությամբ, որ բխում է մեր հասարակության և պետության բարձրագույն շահերից, ՍՍՀՄ Գերագույն սովետը Սովետական Միության կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյին միաձայն ընտրեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ։ Սովետական մարդիկ ջերմ հավանությամբ ընդունեցին կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ընտրվելը կուսակցության և պետության բարձր պոստերում։

ՍՍՀՄ Գերագույն սովետը իր առաջին նստաշրջանում կազմեց ՍՍՀՄ կառավարություն և մյուս բարձրագույն սահմանադրական մարմինները։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանը հանգամանորեն քննարկեցին և հավանություն տվեցին «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղություններին»։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի աշխատանքի արդյունքներն արժանացան սովետական մարդկանց լիակատար ու միահամուռ պաշտպանությանը, նոր հզոր թափ հաղորդեցին կուսակցության նախանշած կոմունիստական արարման հոյակապ ծրագրի կենսագործման նրանց անձնվեր պայքարին։

Սովետական Հայաստանի կոմունիստները, աշխատավորները, ինչպես բոլոր սովետական մարդիկ, հարազատ կուսակցության, նրա մարտական շտաբի՝ լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը սերտորեն համախմբված, ջերմորեն հավանություն են տալիս մեր լենինյան կուսակցության և սովետական պետության ներքին ու արտաքին իմաստուն քաղաքականությանը, լի են վճռականությամբ հայրենանվեր աշխատանքով արժանի և ծանրակշիռ ավանդ ներդնելու մեր մեծ հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման գործում։

* Տպագրվում է կրճատումներով։



Ընկերնե՛ր։

Մեր աշխատանքի հիմնական ուղղությունները սահմանել է ՍՄԿԿ XXVI համագումարը, դրանք զարգացվել և կոնկրետացվել են ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումներում։ «Խոսքը վերաբերում է դեպի կոմունիզմ կատարվող առաջընթացի այնպիսի ստրատեգիայի, որն ընդհանուր ոչ մի բան չունի ո՛չ գործողություններում դանդաղաշարժության հետ, ո՛չ էլ զարգացման պատմականորեն անհրաժեշտ աստիճանների վրայով ցատկելու հետ,— Կենտկոմի 1984 թվականի ապրիլյան պլենումում ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն։ — Խոսքն այն մասին է, որ դեպի կուսակցության բարձրագույն նպատակները տանող ճանապարհին մենք դեռ պետք է լուծենք իրենց ծագումով և բնույթով կոմունիստական ֆորմացիայի առաջին փուլին վերաբերող բազմաթիվ խոշոր ու բարդ խնդիրներ»։

Սա է զարգացած սոցիալիզմի կատարելագործման մեծ ու լարված աշխատանքի գլխավոր բովանդակությունը։ Եվ այդ աշխատանքի հաջողությունը պայմանավորված է մասսաների ձեռներեցության և ստեղծագործության լայն ծավալմամբ, հասարակական կյանքի հանգուցային պրոբլեմների լուծման մեջ նրանց ամենաակտիվ ներգրավմամբ։

Կենտկոմի պլենումում նշվեց, որ ժողովրդական զանգվածների ակտիվացման մեծ ռեզերվներ կան սոցիալիստական դեմոկրատիայի, հասարակության ողջ քաղաքական համակարգի հետագա կատարելագործման ու, նախ և առաջ, բոլոր աստիճանների սովետների գործունեության բարելավման մեջ։

Կոմունիստական կուսակցությունը մշտապես հոգ է տանում սովետների՝ որպես իսկական ժողովրդապետության մարմինների դերի ու հեղինակության բարձրացման մասին, մարմիններ, որոնցում առավել լայնորեն են ներկայացված բնակչության բոլոր խավերը՝ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության, բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորության ներկայացուցիչները։

Մեր երկրում սովետների դերն ու տեղը հստակորեն որոշված են ՍՍՀՄ սահմանադրությամբ։ Կուսակցությունը մշտապես հոգ է տանում սովետների լիազորությունների ընդլայնման մասին։

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը նշեց ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքի հետագա բարելավման, կոմունիստական կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության իրականացման, համաժողովրդական պետականության ու սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործման ասպարեզում նրանց դերի բարձրացման հիմնական ուղղությունները։

Պլենումի հիմնադրույթների, ինչպես և նոր սահմանադրության ընդունումից հետո բոլոր աստիճանների սովետների լիազորությունների ընդլայնման նպատակով կայացված որոշումների իրականացումը ակտիվորեն կնպաստի դրանց գործունեության մեջ օրենսդրության, կառավարման և վերահսկման միասնության լենինյան սկզբունքների առավել լիակատար կենսագործմանը։

Մենք բոլորս, ընկերնե՛ր, ականատես ենք հանրապետության կենսագործունեության բոլոր կողմերի վրա սովետների հարաճուն ներգործության։ Տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում մեր ձեռք բերած հաջողությունները նաև բոլոր աստիճանների սովետների, մեր ժողովրդական ընտրյալների բազմակողմանի կազմակերպչական և քաղաքական գործունեության արդյունքն են։

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները մշտապես ուշադրության կենտրոնում են պահում սովետների գործունեությունը, հոգ տանում դրա բարելավման մասին, գործուն օգնություն ու աջակցություն ցույց տալիս նրանց աշխատանքին։

Սովետներում և նրանց գործկոմներում շատ կան ակտիվ, համակողմանիորեն պատրաստված, գործը արդի պահանջների մակարդակով վարելու ընդունակ ընկերներ։ Ներկայումս հանրապետության սովետների բոլոր օղակներում գործում են 27,5 հազարից ավելի դեպուտատներ։ Նրանց 70 տոկոսն ան-

միջականորեն զբաղված է նյութական արտադրության ոլորտում, 43 տոկոսը կոմունիստներ են, մոտ 50 տոկոսը՝ կանայք։ Դա մեծ ուժ է, ընկերնե՛ր։

Շատ սովետներ, օգտագործելով ընձեռված լայն իրավունքները, հանդես են գալիս որպես տնտեսական, սոցիալական ու կուլտուրական զարգացման իսկական կազմակերպիչներ և լավ արդյունքների են հասնում։ Նրանցից մի քանիսի աշխատանքում ուշագրավ շատ նորություններ կան, արժեքավոր նախաձեռնություններ։ Հետաքրքիր է Երևանի քաղաքային սովետի փորձը քաղաքի բարեկարգման, աշխատանքի, հատկապես վերահսկման աշխատանքի արդյունավետության բարձրացման նպատակով կառավարման ավտոմատ սիստեմի ներդրման գործում, Լենինականի քաղսովետինը՝ քաղաքի ճարտարապետական տեսքի բարելավման, հանրապետության մինիստրությունների ու գերատեսչությունների հետ աշխատանքի փոխհամաձայնեցման բնագավառում, Կիրովականի քաղսովետի փորձը աշխատավորների արտադրական, սոցիալ-կուլտուրական ու կենցաղային շահերը շոշափող հարցերը լուծելու ասպարեզում, Հրազդանի շրջանային սովետինը՝ ձեռնարկությունների ու կազմակերպությունների հնարավորությունները գյուղատնտեսական արտադրության զարգացման ծրագրի իրականացման համար օգտագործելու ասպարեզում, Ախուրյանի շրջսովետինը՝ կուլտուր-կենցաղային օբյեկտների աշխատանքը բարելավելու գործում, Էջմիածնի շրջսովետինը՝ հողագործության ինտենսիվացման բարձրացման ասպարեզում և այլն։

Աշխուժացել է շատ գյուղակ;ան ու ավանային սովետների գործունեությունը։

Որոշ չափով բարելավվել է սովետների նստաշրջանային գործունեությունը։ Քննարկման են դրվում արդյունաբերության, ագրոարդյունաբերական համալիրի, շինարարության, սոցիալական զարգացմանը վերաբերող հրատապ հարցեր և այլն։ Նստաշրջաններում ավելի ու ավելի հաճախ են լսվում սովետներին հաշվետու և նրանց կողմից վերահսկվող մարմինների զեկուցումներ իրենց աշխատանքի, պատվիրանների կատարման, կարգապահության ու կարգուկանոնի ամրապնդման վերաբերյալ։ Ժողովրդի ընտրյալները սկսել են ավելի հաճախակի լինել աշխատավորական կոլեկտիվներում։ Նրանք կանոնավոր կերպով հաշվետու են լինում դեպուտատական պարտականությունների կատարման մասին, ընտրողներին տեղյակ պահում իրենց ներկայացրած սովետի աշխատանքներին։ Ավելի բազմակողմանի է դարձել սովետների մշտական հանձնաժողովների աշխատանքը։ Ընտրողների հետ կապերի ամրապնդմանը, աշխատավորներին կուսակցության քաղաքականության պարզաբանմանը նպաստում են դեպուտատական միասնական օրերը։

Բնականաբար, ընկերնե՛ր, այդ ամենի մեջ մենք տեսնում և ըստ արժանվույն գնահատում ենք նաև քաղաքային, շրջանային կուսակցական կազմակերպությունների ու կոմիտեների ձեռներեցությունը, ղեկավարող և ուղղություն տվող դերը, նրանց կազմակերպչական ու քաղաքական մեծ աշխատանքը։

Դրա հետ մեկտեղ, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, սովետների հսկայական պոտենցիալը, նրանց լայն հնարավորությունները դեռևս բավարար չափով չեն օգտագործվում։ Տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում սովետների դերի բարձրացման մասին որոշումները մեր հանրապետությունում էս դանդաղ, ոչ լրիվ են իրականացվում։ Եվ կուսակցական կազմակերպություններին ու կոմիտեներին մեծ, հետևողական աշխատանք է սպասվում ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումների լույսի ներքո բոլոր աստիճանների սովետների աշխատանքը առավել բարելավելու ասպարեզում։

Շատ սովետներ դեռևս անբավարար են զբաղվում էկոնոմիկան կոմպլեքսայնորեն զարգացնելու, գերատեսչականությունը արմատախիլ անելու, բնակչության բազմապիսի պահանջմունքները բավարարելու, նրա սպասարկման գործը բարելավելու հարցերով։

Որոշ շրջանային ու քաղաքային սովետներ ակտիվ չեն մասնակցում շրջանի, քաղաքի արդյունաբերության, շինարարական արտադրության, տրանսպորտի, էկոնոմիկայի մյուս ճյուղերի զարգացման պլանների մշակմանը։ Չեն



օգտագործում իրենց իրավունքները, չեն ներազդում արտադրության վրա, թույլ են վերահսկում պլանային առաջադրանքների կատարումը իրենց տարածքում գտնվող ձեռնարկությունների և կազմակերպությունների կողմից՝ անկախ դրանց գերատեսչական ենթակայությունից։

Դուք գիտեք, թե կուսակցությունն ու կառավարությունը ինչ նշանակություն են տալիս ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացմանը, դրանց տեսականու ընդլայնմանն ու որակի բարձրացմանը և թե այդ գործում ինչ դեր է հատկացված տեղական սովետներին։ Իսկ արդյոք բոլո՞րն են հարկ եղածին պես կատարում այդ դերը։ Ցավոք, ոչ։

Մենք բազմիցս խնդիր ենք դրել արագացնել այդ ապրանքների յուրացումն ու թողարկումը հանրապետության արդյունաբերական բոլոր ձեռնարկությունների կողմից։ Ընդսմին, նպատակ է հետապնդվում արտադրել նաև այնպիսիք, որոնք ոչ մի այլ տեղ չեն թողարկվում։ Բայց վերոհիշյալ ապրանքների նկատմամբ բնակչության պահանջմունքները տակավին չեն բավարարվում, քանի որ մեր շատ տեղական սովետներ չեն ուսումնասիրում դրանց պահանջարկը և չեն հասնում դրան համապատասխան արտադրանքի թողարկման իրենց տարածքում գտնվող ձեռնարկությունների կողմից։

Առանձին սովետներ կտրված են արտադրական ձեռնարկություններից ու կազմակերպություններից, չգիտեն ո՛չ միայն դրանց զարգացման հեռանկարները, այլև գործերի վիճակը տեղում, աշխատավորական կոլեկտիվների կարիքները։ Բայց չէ՞ որ այդ կոլեկտիվների անդամները, որպես կանոն, հիմնականում նաև տվյալ շրջանի, ավանի, տեղանքի բնակիչներ են։ Այդ ամենը դժվարացնում է թե՛ արտադրական, թե՛ սոցիալական և թե դաստիարակչական բնույթի հարցերի լուծումը։

Միայն յուրաքանչյուր արտադրական ձեռնարկության, կազմակերպության գործերի վիճակի, հնարավորությունների և զարգացման հեռանկարների խոր իմացությունը տեղական սովետներին հնարավորություն կընձեռի արդյունավետ լուծելու շրջանի, քաղաքի ինչպես տնտեսական, այնպես էլ սոցիալական զարգացման հարցերը։

Պարենային ծրագրի կատարումը մեր կարևորագույն խնդիրն է և, բնականաբար, այն առաջնահերթ է գյուղական շրջանների սովետների համար։ Ուրեմն նրանք պետք է այդ հարցը պահեն իրենց գործունեության կենտրոնում, կազմակերպչական ու քաղաքական աշխատանքն ուղղեն ծրագրով նախատեսված նպատակների պարտադիր իրականացմանը։ Այստեղ հարկավոր է մըշտապես բարձրացնել կազմակերպվածությունն ու կարգապահությունը, ամենքի պատասխանատվությունը, ցուցաբերել ձեռնհասություն, հետևողականություն, գործարարություն, ապահովել ընդունված որոշումների, պլանային առաջադրանքների լրիվ կատարումը։ Բայց այդպես վարվում են մեր ոչ բոլոր տեղական սովետները։

Վերջերս Կենտկոմը քննարկեց պարենային ծրագրի կատարման ընթացքը Արտաշատի շրջանում, որը խոշորներից մեկն է հանրապետությունում և լայն հնարավորություններ ունի։ Լուրջ թերություններ բացահայտվեցին կուսշրջկոմի, շրջանային սովետի և շրջանային ագրոարդյունաբերական միավորման աշխատանքում։ Այդ թերությունների գլխավոր պատճառներից մեկը պետական ու կատարողական ցածր կարգապահությունն է։ Պարենային ծրագրով նախատեսված միջոցառումների իրականացումն ընթանում է դանդաղ և ոչ լրիվ։ Չի ապահովվել հանրային նախրում կովերի գլխաքանակը, որ սահմանվել էր Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և հանրապետության մինիստրների խորհրդի որոշմամբ, չեն կատարվում շրջկոմի ու շրջսովետի ընդունած մի շարք որոշումներ։

Շրջանային սովետը, նրա գործկոմը (նախագահ՝ ընկ. Վ. Ասատրյան) թույլ են վերահսկում ընդունված որոշումների կատարման ընթացքին, չեն կազմակերպում դրանց իրականացումը լրիվ ծավալով և նախատեսված ժամկետներում։

Կալինինոյի շրջանային սովետը, նրա գործկոմը (նախագահ ընկ. Կ. Ղազարյան), գյուղական սովետները գործնականորեն չեն զբաղվում գյուղա-

տնտեսական ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքի արդյունավետության բարձրացմամբ, պարենային ծրագրի կատարմամբ։ Սովետները խորամուխ չեն լինում եւ մնացող տնտեսությունների գործունեությանը, հաճախ սահմանափակվում են միայն հարցերի ձևական քննարկմամբ, փաստերի արձանագրումով, պատշաճ հետևողականություն ու գործարարություն հանդես չեն բերում նախատեսված միջոցառումներն իրականացնելու գործում։ Երջսովետի գործկոմը հաճախ ուշացած որոշումներ է ընդունում, որոնք ոչ մի կերպ չեն կարող ազդել գործերի վիճակի վրա։ Որոշումներ կայացնելով անհետաձգելի լուծում պահանջող առանձին հարցերի վերաբերյալ, նա չի վերահսկում դրանց կատարմանը։

Ի՞նչ արժեք ունի, օրինակ, շրջսովետի գործկոմի որոշումը շրջանում ցեղաբուծական աշխատանքի մակարդակը բարձրացնելու վերաբերյալ, երբ տարիներ շարունակ բուն ցեղաբուծական տնտեսություններում (Կալինինո, Նորաշեն, Բլագոդարնոյե) հորթերի ծնաճն ավելի ցածր է, քան շրջանի միջինը։ Ընթացիկ հնգամյակի երեք տարում շրջանը ոչ մի անգամ չի կատարել կաթի արտադրության պլանը, նվազել են կովերի կաթնատվությունը և պետգնումների ծավալները։ Հնգամյակի երեք տարվա հանրագումարով չեն կատարվել մսի ու կարտոֆիլի գնման պլանները։

Չի կարելի ասել, թե Ամասիայի շրջսովետի գործկոմը (նախագահ՝ ընկ. Մ. Հակոբյան), քիչ է քննարկում պարենային ծրագրին, գյուղատնտեսությանը վերաբերող հարցեր։ Ընդհակառակը, նույնիսկ շատ է քննարկում։ Եվ որոշումներ էլ քիչ չի ընդունում։ Իսկ հետո՞։ Հետո այն, որ այդ որոշումները գործի չեն վերածվում, կորցնում են իրենց նշանակությունը։ Դրա ապացույցն են աշխատանքի ցածր արդյունքները։ 1983 թվականին չկատարվեցին հացահատիկի, կաթի, բրդի արտադրության պլանները։ Անթույլատրելիորեն ցածր է հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը։

Նմանօրինակ բացեր կան նաև Կրասնոսելսկի, Գուգարքի, Շամշադինի, Մասիսի, Արարատի և մի շարք այլ շրջսովետների աշխատանքում։ Հարկ է, որ համապատասխան կուսակցական կոմիտեներն ու նրանց ղեկավարները նույնպես անհրաժեշտ հետևություններ անեն քննադատությունից։

Դուք հիշում եք, ընկերնե՛ր, թե Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներից մեկում ինչպիսի քննադատության ենթարկվեցին մեր առանձին տեղական սովետներ այն բանի համար, որ նրանք համապատասխան մինիստրություններից ու գերատեսչություններից, լինեն դրանք միութենական թե հանրապետական, արդյունաբերական ձեռնարկություններ կառուցելիս, վերակառուցելիս կամ ընդլայնելիս չեն պահանջում անպայման կառուցել նաև համապատասխան քանակությամբ բնակարաններ, սոցիալ-կենցաղային և մշակութային օբյեկտներ։ Ասենք, հիմա էլ դեռ որոշ մինիստրություններ այդ հարցերում շրջանցում են տեղական սովետները, դրանով իսկ ստեղծելով լրացուցիչ բարդություններ։

Վերցնենք, թեկուզ, մանկամսուրների ու մանկապարտեզների շինարարությունը։ Մի շարք միութենական ենթակայության ձեռնարկություններ ու կազմակերպություններ, հանրապետական մինիստրություններ ու գերատեսչություններ դեռևս անթույլատրելիորեն վատ են զբաղվում այդ գործով, իրենց կարիքների բավարարումը բարդում տեղական սովետների ուսերին։ Իսկ վերջիններս, չգիտես ինչու, անբացատրելի վեհերոտություն են հանդես բերում այդ ակնհայտ խնամառության կասեցման գործում։

Ինչո՞ւ է, օրինակ, Երքաղսովետի գործկոմը հանդուրժում այն վիճակը, երբ «Հայէլեկտրամեքենա», «Նաիրիտ», «Հայէլեկտրաշարժիչ» արտադրամիավորումները, ռելեի, ավտոդողերի գործարանները, սննդի, թեթև արդյունաբերության, շինանյութերի արդյունաբերության, առևտրի և այլ մինիստրություններ իրենց կարիքներից շատ ավելի պակաս տեղեր ունեն նախադպրոցական հիմնարկներում։ Այստեղ պետք է իրենց խոսքն ասեն նաև կուսակցության Երևանի քաղկոմն ու շրջկոմները։ Եվ ո՛չ միայն մայրաքաղաքի։ Այդ երևույթը առկա է նաև հանրապետության այլ շրջաններում ու քաղաքներում։



Կուսակցությունը և կառավարությունը խնդիր են դնում բնակչությանը լիովին ապահովել նախադպրոցական հիմնարկներով։ Այդ խնդիրը լուծելու համար անհրաժեշտ է մեծապես ավելացնել դրանց կառուցումը, որը քիչ կապիտալ ներդրումներ չի պահանջի։ Եվ այստեղ առանց ձեռնարկությունների և կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների միջոցների ներգրավման հնարավոր չէ գործը գլուխ բերել։ Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է հատուկ քննության առարկա դարձնի այս հարցը, գտնի դրա լուծման օպտիմալ ուղին։

Քանի որ խոսք եղավ շինարարության մասին, մեկ անգամ ևս ընդգծենք դրա որակը բարձրացնելու հրամայական անհրաժեշտությունը և սովետների անելիքներն այդ գործում։ Հանդուրժելի՞ է, արդյոք, ընկերնե՛ր, որ առանձին բնակելի տներ և սոցիալական այլ կառուցվածքներ դեռևս շահագործման են հանձնվում կիսատ-պռատ, ցածր որակով, թերացումների շտկման բազում հոգսեր ու ծախսեր բարդելով նորաբնակների և շահագործողների վրա։ Իսկ չէ՞ որ դրանք ընդունվում են տեղական սովետների, արհմիությունների կողմից կամ էլ նրանց լռելյայն համաձայնությամբ։

Անհրաժեշտ է ամենախիստ պատժամիջոցներ գործադրել թե՛ նրանց նկատմամբ, ովքեր չեն ապահովում աշխատանքների պահանջվող որակը և թե նրանց, ովքեր ընդունում են անորակ օբյեկտը։ Յուրաքանչյուր կառույց ժամկետին և բարձր որակով շահագործման հանձնելը պետք է դառնա ամեն մի շինարարական կազմակերպության, յուրաքանչյուր սովետի կյանքի օրենքը։

Շինարարության, հատկապես բնակարանային շինարարության հարցերը պետք է մշտապես գտնվեն սովետների ուշադրության կենտրոնում։ Նրանք պարտավոր են չթուլացող վերահսկողության տակ առնել յուրաքանչյուր օբյեկտի կառուցման ընթացքը, ամենաբարձր պահանջներ ներկայացնել որակին, հետևել, որ կառույցը հանձնելիս շրջակայքը ևս բարեկարգ լինի։

Անհրաժեշտ է հետևողականորեն բարձրացնել սովետների դերն ու պատասխանատվությունը նաև բնության ու շրջակա միջավայրի պահպանության գործում։ Բնապահպանական պահանջների խախտումները, որոնք տեղ էին գտել հանրապետությունում, բացատրվում են նաև մի շարք տեղական սովետների պասսիվությամբ, անհոգությամբ։ Մենք, ընկերնե՛ր, լրջորեն ենք ձեռնամուխ եղել վիճակի շտկմանը և զգալի արդյունքների հասել։ Եվ դա մեզ չպետք է հանգստացնի։ Ընդհակառակը, պետք է տրամադրի անելու ավելին, հասնելու այն բանին, որ լիովին կատարվեն ՍՄԿԿ Կենտկոմի և կառավարության համապատասխան որոշումների պահանջներն ու երկրի օրենքներն այդ մասին։ Այստեղ ևս մենք իրավունք ունենք տեղական սովետներից պահանջելու էլ ավելի ակտիվ, արդյունավետ աշխատանք։ Բայց, պետք է ասել, որ առանձին տեղական սովետներ այսօր ևս պատշաճ սկզբունքայնություն ու հետևողականություն չեն դրսևորում այդ կարևոր գործում։ Վերցնենք, օրինակ, Երևան քաղաքի Լենինյան շրջանային սովետը։ Արդյոք այստեղ չկա՞ն շրջակա միջավայրի պահպանության պրոբլեմներ։ Կան և այն էլ՝ բարդ։ Շատ ձեռնարկություններ խախտում են օրենսդրությունը։ Իսկ ինչպե՞ս է արձագանքում սովետը։ Շիտակ ասենք՝ ոչ մի խախտող էլ չի զգում նրա ամուր ձեռքը։

Խոսքն այն մասին չէ, որ տեղի-անտեղի մանրախնդրություն արվի, իշխանություն բանեցվի։ Խոսքը տեղական սովետի կողմից բնության պահպանության օրենսդրական պահանջները կատարելու ասպարեզում հետևողական աշխատանք տանելու մասին է, այն մասին, որ այդ աշխատանքը կազմակերպվի ու իրականացվի արդյունաբերական և այլ ձեռնարկությունների, համապատասխան կազմակերպությունների հետ համատեղ։

Բնակչության բազմապիսի պահանջմունքները բավարարելու, նրա սպասարկումը բարելավելու աշխատանքը միշտ պետք է կենտրոնական տեղ գրավի մեր սովետների գործունեության մեջ։

Պետք է ասել, որ այս առումով դրական տեղաշարժեր կան։ Վերջին ժամանակներս տեղական սովետները համապատասխան հանրապետական մարմինների հետ համատեղ շատ բան են արել բնակչության բնակարանային, կոմունալ-կենցաղային պայմանները բարելավելու, ճանապարհներ կառուցելու

և տրանսպորտի աշխատանքը կանոնավորելու, առևտրական, կենցաղային, բժշկական սպասարկման զարգացման և դրանց կուլտուրան բարձրացնելու, հասարակական կարգի պահպանումն ամրապնդելու, թատրոնների, զբոսայգիների, սոցիալական ու մշակութային մյուս օբյեկտների գործունեությունը բարելավելու բնագավառում:

Եվ, այնուհանդերձ, մեզանում շատ տներ ձմռանը վատ են տաքացվում, խափանվում է ջրամատակարարումը, առանձին քաղաքներում, շրջկենտրոններում և ավաններում տեղ-տեղ հակասանիտարական վիճակ է տիրում, վատ է գործում հասարակական տրանսպորտը, փողոցները լավ չեն լուսավորվում, կան հասարակական կարգի խախտումներ, խուլիգանության փաստեր, ցածր է սպասարկման ոլորտի կուլտուրան և այլն:

Այս ամենի մեջ մենք տեսնում ենք նաև ժողովրդական դեպուտատների տեղական սովետների աշխատանքի թերություններն ու վրիպումները: Ուրիշ էլ ովքեր, եթե ոչ տեղական սովետները, պետք է իրենց ձեռքը վերցնեն բնակչության սպասարկումը բարելավելու գործը: Բայց մեզանում քիչ չեն փաստերը, երբ առանձին տեղական սովետներ հեռու են կանգնում առևտրի, կենցաղային սպասարկման կազմակերպումից: Հաճախ անտարբերություն են հանդես բերում դրանց զարգացման, աշխատանքի բարելավման, սպասարկումների տեսակների ընդլայնման, բնակչությանը ժամանակին անհրաժեշտ ապրանքներ ու մթերքներ մատակարարելու գործում:

Կամ վերցնենք հասարակական կարգի պահպանության հարցը: Սովետները և նրանց գործկոմները որոշ դեպքերում հաշտվում են այն բանի հետ, որ հանրապետության այս կամ այն քաղաքում կամ գյուղում չեն նվազում խուլիգանության դեպքերը, հասարակայնությանը ոտքի չեն հանում այդ չարիքի դեմ պայքարելու, թույլ են վերահսկում միլիցիայի մարմինների աշխատանքը: Մինչդեռ այդ մարմինները հենց այդպես էլ կոչվում են՝ ժողովրդական դեպուտատների շրջսովետի, քաղսովետի գործկոմի ներքին գործերի բաժին:

Այս ամենի վրա մեր ուշադրությունը մեկ անգամ ևս բևեռեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն Մոսկվայի «Սերպ ի մոլոտ» մետալուրգիական գործարանի բանվորների հետ ունեցած հանդիպման ժամանակ:

Կրկնենք ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում բերված լենինյան այն միտքը, որ սովետների լիակատար իշխանությունը բավական չէ ձևականորեն դեկրետագրել...», այլ անհրաժեշտ է նաև «գործնականապես կարգավորել և ստուգել կառավարման կանոնավոր, ամենօրյա աշխատանքով»:

Յուրաքանչյուր շրջանի, ավանի, քաղաքի բնակչությունը, աշխատավորությունն առաջին հերթին և անմիջականորեն իշխանության հետ շփվում են ի դեմս սովետների, և վերջիններիս աշխատանքի ամեն մի թերություն, խափանում բացասաբար է անդրադառնում մարդկանց տրամադրության վրա, արդարացի գանգատներ ու կշտամբանքներ հարուցում: Մի շարք սովետների աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանք դեռևս միշտ չէ, որ ժամանակին են քննարկում և վերացնում արդարացի գանգատներ ու կշտամբանքներ ծնող պատճառները: Իբրև հետևանք աճում է աշխատավորների բանավոր ու գրավոր դիմումների քանակը, որ հասցեագրվում է հանրապետական և կենտրոնական կուսակցական ու սովետական մարմիններին: Շատ գանգատներ են ստացվում մասնավորապես բնակարանների հաշվառման ու բաշխման կարգի խախտման, բնակելի տների շինարարության ցածր որակի, բնակելի ֆոնդի պահպանման ու նորոգման, տրանսպորտի աշխատանքում, սպասարկման ոլորտում եղած թերությունների կապակցությամբ: Դրանց թիվն անշուշտ կկրճատվի, եթե տեղական սովետները ժամանակին և գործնականորեն քննարկեն ամեն գանգատ-բողոք և այդ առթիվ ձեռնարկեն սպառիչ միջոցներ:

Տնտեսական, սոցիալական զարգացման, կուլտուրական շինարարության հարցերը լուծելիս սովետները պետք է ավելի ակտիվորեն օգտագործեն իրենց իրավունքները, վերահսկեն հաշվետու մարմինների և պաշտոնատար անձանց, իրենց տարածքում գտնվող կազմակերպությունների ու ձեռնարկությունների գործունեությունը: Կուսակցական կոմիտեները պետք է հասնեն այն բանին,



որ սովետների աշխատանքում, ինչպես ասում էր Վ. Ի. Լենինը, առաջին տեղում գտնվի կենտրոնական իշխանության և տեղական հիմնարկությունների որոշումների գործնական իրականացման փաստական վերահսկումը:

Եթե մենք ուզում ենք ամրապնդել կարգուկանոնը, կազմակերպվածությունը, սոցիալիստական օրինականությունը, ապա նախ և առաջ պետք է ձգտենք, որ կատարվեն ընդունված բոլոր որոշումները, խստիվ պահպանվեն բոլոր օրենքները: Իսկ դրանում անչափ մեծ են սովետների դերն ու պատասխանատվությունը:

Իսկ արդյոք բոլո՞ր սովետների աշխատանքն է գտնվում այդ պահանջների բարձրության վրա: Ցավոք, ոչ: Կարելի է բազում օրինակներ բերել, երբ տեղական սովետները չեն ապահովում կուսակցական և սովետական վերադաս մարմինների, նաև սեփական որոշումների կատարումը, չեն վերահսկում օրենքների կիրառումը, որոնք առանձին դեպքերում նրանց թողտվության պայմաններում և՛ խախտվում են, և՛ շրջանցվում:

Մեր հանրապետությունը սահմանափակ հողային ռեսուրսներ ունի: Այդ հանգամանքը, բնականաբար, թելադրում է հոգատար վերաբերվել հողին, նպատակահարմար և բարձրարդյունավետ օգտագործել այն, մշտապես վերականգնել նրա տնտեսական բերրիությունը, խստիվ կիրառել հողի պահպանման օրենքն ու հողային օրենսդրությունը: Այդ հարցերի վերաբերյալ բազմաթիվ որոշումներ են կայացվել:

Ուրիշ էլ ո՞վ, եթե ոչ տեղական իշխանությունները՝ սովետները, պետք է ապահովեն դրանց կատարումը:

Չնայած որոշակի տեղաշարժերին, այսօր հանրապետության շատ վայրերում շրջանային, ավանային, գյուղական սովետների թողտվությամբ տեղ են գտնում հողի ոչ նպատակահարմար օգտագործման փաստեր, այլ նպատակների համար հողերի անհիմն հատկացումներ, ինքնահոսի են մատնված հակաէրոզիոն, հողավերականգնման աշխատանքները, կան հողի ուղղակի շռայլման փաստեր: Տեղական սովետները պատշաճ պայքար չեն մղում հողօգտագործման օրենքները խախտողների դեմ: Այսպես, Աշտարակի շրջանի Արտաշավան, Ձորափ, Կարբի, Բյուրական, Ավան և այլ գյուղերում, ինչպես նաև Աշտարակ քաղաքում բնակելի տներ դնելու միջոցով տնամերձ հողամասեր են ստացել կամ դրանց տերը դարձել ուրիշ վայրերից եկած անձինք: Փաստեր կան, երբ կոլտնտեսականների և սովխոզների աշխատողների անվան տակ տներ են կառուցում Երևանում ապրողները: Առանձին անձինք այնպիսի տներ, ամառանոցներ են կառուցել, որոնք զգալիորեն գերազանցում են օրենքով սահմանված չափերը:

Ամառանոցների և տների ապօրինի շինարարության այսօրինակ և այլ փաստեր են բացահայտվել նաև մի շարք այլ շրջաններում, մասնավորապես Աբովյանի շրջանում:

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը բերում է կոնկրետ օրինակներ, քննադատական խոսք ուղղում այն շրջսովետների գործկոմների հասցեին, որոնք հանդուրժում են նման վիճակը, անհաշտ պայքար չեն մղում սահմանված կարգը խախտողների դեմ:

Հարց է ծագում, շարունակում է նա, կարո՞ղ էին առանձնատներ ծլել հանկարծակի, մի գիշերվա ընթացքում: Չէ՞ որ դրանք կառուցվել են բոլորի, այդ թվում և տեղական իշխանությունների աչքի առջև: Իսկ ինչո՞ւ չեն կանխվել խախտումները: Հենց այն պատճառով գուցե, որ ինչպես հարկն է չեն պատժվում նաև դրա համար ուղղակի պաշտոնեական պատասխանատվություն կրողները: Ահա վերոհիշյալ փաստերի կապակցությամբ ևս, որքան էլ որ տարօրինակ է, զանցաթողության համար մեղավոր պաշտոնատար անձանցից ոչ մեկը կուսակցական և վարչական խիստ պատասխանատվության չի ենթարկվել:

Կուսակցական կոմիտեները պետք է ավելի պահանջկոտ լինեն բոլոր, այդ թվում և սովետներում աշխատող պաշտոնատար անձանց նկատմամբ, պատշաճ գնահատական տան զանցաթողության, վերահսկողության բացակայության բոլոր փաստերին: Պետք է օրենք դառնա՝ խստագույն պատիժ թե՛ նրանց,

ովքեր հանցանք են թույլ տվել և թե՛ նրանց, ովքեր նպաստել են դրան կամ զանցաթողություն արել։

Եվս մի հարց, որի վրա հարկ է սևեռել տեղական սովետների ուշադրությունը։ Դա այսպես կոչված անբնակ, դատարկ տների խնդիրն է մեր գյուղերում։ Հանրապետության առանձին գյուղերում, բնակավայրերում կան նման շատ տներ, որոնք որպես կանոն կառուցված են խնամքով, հարդարված և լավորակ, շրջապատված են պատկառելի չափեր ունեցող արգավանդ տնամերձերով։ Այդ հարցի մասին, Թումանյանի շրջանի այդօրինակ մեծաքանակ տների առիթով վերջերս գրեց «Կոմունիստ» թերթը։

Համանման օրինակներ կան հանրապետության այլ շրջաններում։ Դրանք բնավ էլ լքված տներ չեն, այլ պարզապես կողպված են փականքով, իսկ տանտերերն ապրում են մոտիկ քաղաքներում և շրջկենտրոններում։ Մյուս կողմից, այդպիսի շատ գյուղերում սրությամբ ծառացած է հրավիրված մասնագետներին և երիտասարդ ընտանիքներին բնակարանով ապահովելու խնդիրը։

Նշված հարցերի լուծմամբ, դրանց իրավական կողմերով պետք է համապատասխան մարմինների հետ զբաղվեն շրջանային և քաղաքային սովետները։

Այստեղ չի կարելի անտեսել նաև հարցի բարոյական կողմը։ Դժվար չէ պատկերացնել, թե այդ երևույթը ինչ վնաս է հասցնում մեր մարդկանց ու նախ և առաջ հողի մարդկանց դաստիարակության գործին։

Անհրաժեշտ է ընդհուպ զբաղվել նաև հանրապետության քաղաքներում և հատկապես Երևանում բնակիչների վրա ձևակերպված, բայց չօգտագործվող, դատարկ բնակարանների հարցով։

Դուք լավ գիտենք, թե ներկայումս մեզ մոտ ինչ մեծ ուշադրություն է դարձվում լեռնային և նախալեռնային շրջանների տնտեսական ու սոցիալական կոմպլեքսային զարգացման հարցերին։ Սակայն պետք է ասել, որ բազմաթիվ չլուծված, ընդ որում լուրջ, բուն կյանքի կողմից առաջադրված պրոբլեմներ կան նաև Արարատյան դաշտի շրջաններում։ Այստեղ, հատկապես Արտաշատի, Արարատի, Հոկտեմբերյանի առանձին գյուղեր խիստ գերբնակեցված են։ Գոյանում են նոր ընտանիքներ, որոնց այլևս հնարավորություն չկա տնամերձ հողամասեր հատկացնելու։

Ելքը մեկն է՝ այդ ընտանիքները պետք է տեղափոխվեն այն տարածքները, ուր հնարավորություն կա նրանց բնակարան ու տնամերձ հողամասեր տրամադրելու։ Այդպիսի վայրեր կան և շատ մոտիկ։ Այսպես, նոր՝ Բաղրամյանի շրջանում ստեղծվում են մի ամբողջ շարք սովխոզներ, որտեղ կառուցվում են հիանալի տներ՝ տնամերձերով և գյուղական բնակչի համար անհրաժեշտ բոլոր շինություններով։ Ոչ քիչ թվով նոր բնակիչներ կարող են ընդունել նաև հենց այդ շրջաններում ստեղծվող նոր բնակավայրերը։ Բայց որքան էլ տարօրինակ է, առայժմ քչերն են փոխադրվել այստեղ։ Դրանց մի մասը տրամադրվում է արդեն ուրիշ վայրերից եկած ընտանիքներին, որ ավելի է սրում Արարատյան դաշտում գոյություն ունեցող ժողովրդագրական իրավիճակը։

Համապատասխան շրջանների ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմները պետք է լրջորեն զբաղվեն այդ խնդրով և մոտ ժամանակներս համատեղ ջանքերով լուծեն այն։

Մի խոսքով, տեղական սովետները բազմազան և անսպառ գործունեության ասպարեզ ունեն։ Իրենց ֆունկցիաներն ու լիազորությունները հաջող կատարելու համար սովետները, նրանց գործկոմները պետք է մշտապես ամրապնդեն կապերը մասսաների հետ, հետևողականորեն կատարելագործեն աշխատանքի ոճն ու մեթոդները։ Անհրաժեշտ է լիովին օգտագործել դեպուտատների և ակտիվիստների հոծ բանակի ուժերը, բարձրացնել մշտական հանձնաժողովների, արտադրական ու տերիտորիալ դեպուտատական խմբերի աշխատանքի մակարդակը։ Պետք է ավելի ակտիվորեն կիրառել կառավարման մարմինների նկատմամբ վերահսկողության այնպիսի մի ներգործուն ձև, որպիսին դեպուտատական հարցապնդումն է։ Անհրաժեշտ է հետևողականորեն բարելավել աշխատանքը նաև ընտրողների պատվիրանների կատարման



ասպարեզում, դրանք հաշվի առնել տնտեսական ու սոցիալական զարգացման պլանները մշակելիս։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, համակուսակցական կարևորագույն խնդիր համարեց գերագույն և տեղական սովետների գործունեության բոլոր կողմերի զարգացումը։ Կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները կուսակցական ներգործության բոլոր եղանակներով պետք է հասնեն սովետների գործունեության արդյունավետության բարձրացմանը, այն բանին, որ սովետների՝ սահմանադրությամբ վավերացված լիիշխանությունը մշտապես և ամենուրեք իր արտահայտությունը գտնի նրանց գործունեության թե՛ բովանդակության, թե՛ ոճի մեջ։ Դա օրվա պահանջն է։

«Այս պահանջը ներկայացվում է բոլոր կուսակցական կոմիտեներին,— նշեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն պլենումում արտասանած ճառում։— Եվ, անշուշտ, կոմունիստ դեպուտատներին, որոնց միջոցով էլ կուսակցությունն իրականացնում է իր ղեկավար դերը սովետներում։ Այստեղ կարևոր է նրանց օրինակը, կարևոր է նրանց պատասխանատու վերաբերմունքը դեպուտատական պարտականությունների նկատմամբ։ Նրանք կոչված են սովետների աշխատանքում ներդնելու կազմակերպիչ սկզբունքը, իրենց շուրջը համախմբելու բոլոր ժողովրդական ընտրյալներին, խթանելու և ուղղություն տալու նրանց ստեղծագործական նախաձեռնությանը»։

Սովետների աշխատանքի արդյունավետության բարձրացումը մեծապես պայմանավորված է նաև գործկոմների և դրանց ապարատների ներդաշնակ, նպատակասլաց գործունեությամբ։ Սովետի ապարատը պետք է լինի գործարար, ճկուն, ոչ մարդաշատ, բայց ուժեղ։ Լենինը գտնում էր, որ ապարատը պետք է ամուր լինի։ «Բայց ապարատ քաղաքականության համար, այլ ոչ թե քաղաքականություն՝ ապարատի համար»։ Այսօր ավելի, քան երբևէ կարևոր է, որ այնտեղ աշխատող ընկերները լինեն ձեռնհաս, նախաձեռնող, բարեխիղճ, բարձր զարգացած մարդիկ։ Այնպիսի մարդիկ, որոնք օժտված են քաղաքական բարձր կուլտուրայով, աշխատանքի կուլտուրայով, որը բացառում է բյուրոկրատիզմի, ձևամոլության, քաշքշուկի, սնապարծության, անհամեստության ամեն դրսևորում։

Սովետների ապարատի աշխատողները պետք է խորապես ըմբռնեն կուսակցության քաղաքականությունը, իրենց աշխատանքը կառուցեն դրա հիման վրա, պետք է լինեն վերին աստիճանի հավաք, գործարարության ու բարձր պատասխանատվության, աշխատանքի նկատմամբ գիտակցական, ստեղծագործական վերաբերմունքի օրինակ ծառայեն, անհանդուրժողություն հանդես բերեն թերությունների, տեղայնության ամեն կարգի դրսևորումների նկատմամբ։ Նրանք պետք է կարողանան շրջանում, քաղաքում, ամբողջ հանրապետությունում տեղի ունեցող սոցիալ-տնտեսական պրոցեսների վերլուծման հիման վրա կազմակերպել գործը, պատրաստել համապատասխան առաջարկություններ, հանձնարարականներ, փաստաթղթեր։

Հարկավոր է, որ կուսակցական կազմակերպությունները մշտապես ձգտեն կատարելագործել և բարելավել սովետների գործկոմների ապարատի աշխատանքը, որ նրա բոլոր ստորաբաժանումների աշխատողները կապված լինեն կյանքի հետ, քաջատեղյակ լինեն գործերի վիճակին տեղերում, իմանան ու հոգան մարդկանց կարիքներն ու հոգսերը, ջանադիր տիրապետեն ապարատային աշխատանքի կուլտուրային։

Բոլոր աստիճանների սովետների վսեմ պարտքն է ակտիվորեն աշխատել տնտեսական ու կուլտուրական շինարարության, մեր սոցիալիստական հասարակության կատարելագործման հարցերի լուծման համար, ապահովել աշխատավորների շահամետ մասնակցությունը ժողովրդական տնտեսության, հասարակության, պետության բոլոր գործերի կառավարմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, լսեց Կենտկոմի քարտուղար ընկեր Մ. Վ. Զիմյանինի զեկուցումը հանրակրթ-

*թական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունների մասին։ Այդ հարցին էր նվիրված նաև ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառի մի զգալի մասը։*

*Պլենումը շեշտեց ռեֆորմի՝ որպես զարգացած սոցիալիստական հասարակության պլանաչափ, համակողմանի կատարելագործման կարևոր բաղկացուցիչ մասի, քաղաքական, սոցիալ-տնտեսական և գաղափարախոսական մեծ նշանակությունը, հանրագումարի բերեց դպրոցի ռեֆորմի մասին ՍՄԿԿ Կենտկոմի նախագծի համաժողովրդական քննարկման արդյունքները և ընդունեց համապատասխան որոշում։*

*ՍՄԿԿ Կենտկոմի նախագիծը լայնորեն, գործարար կերպով քննարկվեց նաև մեր հանրապետությունում։ Քննարկմանը մասնակցեց ավելի քան մեկ միլիոն մարդ, որոնցից ելույթ ունեցան մոտավորապես 110 հազարը, քննարկման ընթացքը լայնորեն լուսաբանում էին մասսայական ինֆորմացիայի միջոցները։ Քննարկումը ցույց տվեց աշխատավորների մեծ շահագրգռությունը ժողովրդական կրթության բարելավման, նրա բոլոր օղակների կատարելագործման հարցում։*

*Ապրիլյան պլենումի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանի հավանությանն արժանացած հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղություններում սահմանված է երիտասարդության կրթության ու դաստիարակության հետագա կատարելագործման կուսակցության ստրատեգիան, զարգացում են ստացել միասնական, աշխատանքային, պոլիտեխնիկական դպրոցի լենինյան սկզբունքները, հաշվի առնելով արդի պայմանները և մեր հասարակության հնարավորությունները։*

*«Որպեսզի սովետական հասարակությունը վստահորեն ընթանա առաջ, դեպի մեր մեծ նպատակները,— պլենումում շեշտեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— յուրաքանչյուր նոր սերունդ պետք է հասնի կրթության և ընդհանուր կուլտուրայի, պրոֆեսիոնալ որակավորման և քաղաքացիական ակտիվության ավելի բարձր մակարդակի։ Այսպիսին է, կարելի է ասել, սոցիալական առաջընթացի օրենքը»։*

*Դպրոցի ռեֆորմի հիմնական նպատակն է բարձրացնել երիտասարդության կրթության ու դաստիարակության որակը, արմատապես բարելավել կյանքին և աշխատանքին երիտասարդությանը նախապատրաստելու գործը։*

*Խնդիր է դրվում հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի աշխատանքը բարձրացնել որակապես նոր մակարդակի, ապահովել սովորողների կողմից գիտությունների հիմունքների խոր տիրապետումը, նրանց մեջ կայուն կոմունիստական համոզվածության, աշխատասիրության, կարգապահության, բարոյական վեհ իդեալների ձևավորումը, նրանց դաստիարակումը բազմազգ սոցիալիստական հայրենիքի հանդեպ անսահման սիրո և հայրենիքը պաշտպանելու պատրաստակամության ոգով, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։*

*Խնդիր է դրվում արմատապես բարելավել դպրոցականների աշխատանքային ուսուցումն ու մասնագիտական կողմնորոշումը, ընդլայնել որակյալ բանվորական կադրերի պատրաստումը պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգում, երիտասարդության համընդհանուր միջնակարգ կրթությունը լրացնել համընդհանուր պրոֆեսիոնալ կրթությամբ։ Դպրոցի ռեֆորմը հաշվի է առնում ազգային առանձնահատկությունները և տեղական պայմանները։*

*Ի կատարումն ռեֆորմի, ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և ՀԱՄԿԽ-ն արդեն ընդունել են մի շարք որոշումներ։*

*Գլխավորն այժմ այն է, որ լիովին կենսագործվեն ռեֆորմի գաղափարները, ընդունված որոշումները, որ նյութական ու կազմակերպական ամուր հիմք ստեղծվի դպրոցի վերափոխման ամբողջ աշխատանքի համար։*

*Ներկայումս մեր հանրապետությունում կա 1325 դպրոց, ուր աշխատում է մանկավարժների բազմահազարանոց բանակ, սովորում են 555,8 հազար դպրոցականներ։ Մենք մեծ հաջողությունների ենք հասել ժողովրդական կրթության, դպրոցի զարգացման գործում, ունենք կրթական աշխատանքի հսկայական փորձ, զարգացած գիտամանկավարժական միտք, նյութական լայն բազա։ Մենք բոլոր հնարավորություններն ունենք, հենվելով այդ նվաճումների վրա, անցում կատարելու մեր դպրոցի զարգացման որակապես նոր մակարդակի։*

*Հանրապետական կուսակցական կազմակերպությունը, նրա քաղկոմները և շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները, սովետական, տնտեսական, արհմիութենական ու կոմերիտական մարմինները պետք է կազմակերպչական ու մասսայական-քաղաքական լայն աշխատանք ծավալեն ռեֆորմի իրականացման համար։ Հանրապետության լուսավորության և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունները, պրոֆտեխկրթության պետական կոմիտեն, ուսումնական հաստատությունները և արտադրական ձեռնարկությունները, ժողովրդական կրթության հետ առնչվող բոլոր կազմակերպությունները պետք է մշակեն և կենսագործեն ռեֆորմի իրականացման կոնկրետ միջոցառումներ, ինչպես նաև վերացնեն այդ կարևորագույն աշխատանքում դեռևս առկա թերություններն ու վրիպումները։ Այս ամենը պետք է մշտապես գտնվի կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության Գերագույն սովետի նախագահության և կառավարության ուշադրության կենտրոնում։ Խոսքը վերաբերում է համաժողովրդական գործի, և մասնակցությունն այդ գործին պետք է լինի համաժողովրդական, համապետական։*

*Աշխատանքը ճիշտ կազմակերպելու համար մենք պետք է պարզորոշ պատկերացնենք նրա բնույթը և մասշտաբները բոլոր այն պրոբլեմների, որոնք ծագում են ռեֆորմի առնչությամբ։ Նշենք, որ դրանք շատ կողմերով դուրս են գալիս ռեֆորմի շրջանակներից։*

*Ռեֆորմը մեծ նշանակության խնդիր է առաջադրում․ ապահովել դպրոցի վճռական շրջադարձը դեպի երիտասարդության նախապատրաստումը նյութական արտադրության ոլորտում աշխատելու։ Պլենումում իրավացիորեն նշվեց՝ որքան մենք մերձեցնենք դպրոցն ու արտադրությունը, այնքան ծանրակշիռ կլինի ռեֆորմից սպասվող հատույցը, դաստիարակչական, քաղաքական հատույցը։*

*Սովետական երիտասարդությունը պետք է ինքնուրույն կյանք մտնի բարձր կուլտուրայի տեր, կրթված և աշխատասեր։ Երիտասարդները պետք է դասակարգային կոփվածք ստանան աշխատավորական կոլեկտիվներում։ Ռեֆորմը նախատեսում է մի շարք գործնական միջոցառումներ, որոնց նպատակն է բազմակողմանիորեն բարելավել դպրոցականների աշխատանքային դաստիարակությունը, ամրապնդել դրա ուսումնանյութական բազան, զգալիորեն ավելացնել աշխատանքային ուսուցման ժամերը, զարգացնել հանրօգուտ արտադրական աշխատանքի կազմակերպման բոլոր ձևերը, ընդլայնել աշխատանքային ուսուցման համար ինժեներամանկավարժական կադրերի պատրաստումը, բարձրացնել նրանց պրոֆեսիոնալ և մանկավարժական որակավորումը, ստեղծել սովորողների մասնագիտական կողմնորոշման միասնական համակարգ։*

*Մեր հանրապետությունում դպրոցականների աշխատանքային դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման գործում կան որոշ հաջողություններ։ Սակայն ամբողջությամբ վերցված վիճակը դեռևս բավարար համարել չի կարելի։ Սուր է ուսումնական արհեստանոցների ու կաբինետների հարցը։ 55 դպրոցներում այդպիսիք ընդհանրապես չկան, իսկ մի մասում էլ դրանք տեղավորված են չհարմարեցված սենյակներում։ Սարքավորումների մեծ մասը ֆիզիկապես ու բարոյապես մաշված է, արհեստանոցներին բավարար չափով չեն մատակարարվում անհրաժեշտ աշխատանքային նյութեր, գործիքներ, այլ գույք։ 167 գյուղական դպրոցներ չունեն ուսումնափորձնական հողամասեր։ Հանրապետությունում անհրաժեշտ զարգացում չի ստացել դպրոցականների տեխնիկական ստեղծագործությունը։*

Մեր մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներ, խոսքով ընդունելով դպրոցականների աշխատանքային դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման կարևորությունը, երբ գործը հասնում է հարցի պրակտիկ լուծմանը, հանդես են բերում անպատասխանատվություն, պատշաճ միջոցներ չեն ձեռնարկում դրանց իրականացման համար։ Հարկավոր է վճռականորեն աղատվել այս ամենից, վերացնել թերությունները։

Արդեն այսօր մենք պետք է ձեռնամուխ լինենք այնպիսի ուսումնատեխնիկական բազայի ստեղծմանը, որը հանրակրթական դպրոցների շրջանավարտներին թույլ տա ուսման ժամանակաշրջանում գիտությունների հիմունքների խոր ու կայուն տիրապետման հետ մեկտեղ ստանալ աշխատանքային ամուր կոփվածք, գործնական հմտություններ ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում մասնագիտորեն աշխատելու համար։ Բազային ձեռնարկությունները պարտավոր են դպրոցներին հատկացնել սարքավորումներ, տեխնիկա, նյութեր, կոմպլեկտավորող իրեր, ուսումնափորձնական հողամասեր։

Բարձր դասարանցիների արտադրողական աշխատանքի կազմակերպման համար ռեֆորմը նախատեսում է էկոնոմիկայի տարբեր ճյուղերում առանձնացնել կամ ստեղծել ժամանակակից սարքավորումներով հագեցված անհրաժեշտ քանակությամբ աշխատատեղեր։ Թվերը, ընկերնե՛ր, հանրապետությունում ևս պատկառազդու են, հասնում են մի քանի տասնյակ հազարների։ Հանրօգուտ աշխատանքի մեջ նման թվով աշակերտների ինչպես հարկն է ներգրավելու համար պետպլանը, մեր բոլոր համապատասխան տնտեսական մարմինները, արտադրական ձեռնարկություններն ու կազմակերպությունները պետք է մշակեն ու իրականացնեն կոմպլեքսային միջոցառումներ։ Այս գործը պահանջում է մտածված մոտեցում, սիստեմային կազմակերպում։ Դա կապված է ֆինանսական և այլ կարգի մեծ ծախքերի հետ։ Եվ պետպլանը պետք է այդ ամենը հաշվի առնի հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի պլաններում։

Ինչպես ընդգծվեց ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, մենք ռեֆորմից ակնկալում ենք նաև տնտեսական, կադրային հատույց։ Բարձր դասարանցիների համար ստեղծված յուրաքանչյուր աշխատատեղ պետք է հասարակությանը բերի կոնկրետ արդյունք՝ թեկուզ ոչ մեծ, բայց անպայման շոշափելի արդյունք։ Իսկ միջնակարգ կրթությունն ավարտելուց հետո ժողովրդական տնտեսության ոլորտը պիտի գան դպրոցների և պրոֆտեխուսումնարանների հազարավոր շրջանավարտներ՝ զինված կայուն գիտելիքներով և անհրաժեշտ աշխատանքային հմտություններով։

Լուրջ թերություններ կան դպրոցականներին աշխատանքի տեղավորելու գործում։ Սովետական, տնտեսական մարմինները պետք է ըստ ամենայնի բարելավեն այն։ Անթույլատրելի է, որ միջնակարգ դպրոցների շրջանավարտների մի որոշ մասը չի ներգրավվում հանրօգուտ աշխատանքում։

Սովորողների աշխատանքային դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման խնդիրներն անհնար է հաջողությամբ լուծել առանց ծնողների ակտիվ մասնակցության։ Սակայն գաղտնիք չէ, որ շատ ծնողներ մանկուց երեխաներին չեն ներարկում աշխատանքի սեր, աշխատանքային հմտություններ, հաճախ ղեկավարվում են պատվախնդրական հոռի նկատառումներով։

Այս մասին շատ դիպուկ ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն Մոսկվայի Կույբիշևյան ընտրական օկրուգի ընտրողների հետ հանդիպման ժամանակ. «Աշխատելը դժվար բան է, խոսք չկա։ Իսկ ծնողները երբեմն գայթակղվում են նրանով, որ երեխաներին զերծ պահեն դժվարություններից։ Բայց չէ որ միայն հանրօգուտ աշխատանքն է մարդկային կյանքին կշիռ տալիս։ Եվ ահա հարկավոր է երեխաներին սովորեցնել ոչ թե այն բանին, ինչը հեշտ է (դա նրանք իրենք էլ կկարողանան անել), այլ այն բանին, ինչը դժվար է։ Աշակերտների մեջ դաստիարակել սեր աշխատանքի նկատմամբ, դաստիարակչական պրոցեսի մեջ լիովին ներառնել արտադրողական աշխատանքի ուժը՝ հենց սա է դաստիարակության կարևորագույն խնդիրներից մեկը»։



ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում նշվեց, որ շեշտն այժմ մատչելի արտադրողական աշխատանքով դպրոցականին դաստիարակելու վրա դնելը՝ իր ամբողջ սկզբունքային կարևորությամբ հանդերձ, չի ժխտում այն ճշմարտությունը, որ գլխավոր աշխատանքը երեխայի համար, իհարկե, ուսումն է, գիտության հիմունքների կայուն տիրապետումը։

Իսկ դա առաջին հերթին պահանջում է բարձրացնել դասավանդման գիտական ու գաղափարական մակարդակը, ըստ ամենայնի բարելավել ուսուցման և դաստիարակության որակը, բարձրացնել դպրոցականների առաջադիմությունը բոլոր հանրակրթական առարկաներից։ Գաղտնիք չէ, որ լուրջ բացեր կան մեր դպրոցների շատ շրջանավարտների գիտելիքների ու դաստիարակության մեջ։ Իսկ դա հետևանք է կրթության ու դաստիարակության անբավարար որակի։ Մի շարք դպրոցներում առանձին առարկաների դասավանդման մակարդակը ցածր է։ Ժամանակակից բարձր պահանջներին չի համապատասխանում նաև առանձին ուսուցիչների մասնագիտական պատրաստականությունը, չխոսելով այն մասին, որ նրանցից ոմանք էլ իրենց վարքով արատավորում են մատաղ սերնդի դաստիարակի վսեմ կոչումը։

Այսօր ուսումնական պրոցեսը պետք է առավել մեծ չափով դառնա աշխարհայեցողական բովանդակություն կրող։ Դպրոցի խնդիրն է, նշվեց պլենումում, աշակերտների մեջ ձևավորել մարքս-լենինյան համոզվածություն, ինքնուրույն ստեղծագործական մտածողության ունակություն, զարգացնել սոցիալիստական հայրենիքի բախտի համար անձնական պատասխանատվության գիտակցում։

Այս ամենը, բնականաբար, պահանջում է ձեռնարկել արմատական միջոցներ՝ վերացնելու թերությունները, բարելավելու հանրապետության լուսավորության մինիստրության գործունեությունը (մինիստր՝ ընկ. Ս. Հախումյան), որը պարտավոր է կարճ ժամանակում վերակառուցել իր աշխատանքը ռեֆորմի պահանջների ոգով։

Ձեռնամուխ լինելով դպրոցի ռեֆորմի իրականացմանը, լուսավորության մինիստրությունը, նրա տեղական մարմինները, մանկավարժական կոլեկտիվները, նրանց կուսակցական կազմակերպությունները պետք է մշակեն և իրականացնեն ուսումնական պրոցեսի բոլոր կողմերի կատարելագործման, ուսուցման ձևերի ու մեթոդների բարելավման, ուսուցման տեխնիկական միջոցների և ժամանակակից հաշվողական տեխնիկայի արդյունավետ օգտագործման եռանդուն միջոցառումներ։ Անհրաժեշտ է ըստ ամենայնի բարելավել մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի և մյուս բնագիտական ու, իհարկե, հումանիտար առարկաների դասավանդումը։ Հարկավոր է հետևողականորեն բարելավել մեր ուսուցիչների որակական կազմը, բարձրացնել նրանց մասնագիտական պատրաստականության մակարդակը, ակտիվորեն օգտագործելով ռեֆորմի ընձեռած բոլոր հնարավորությունները, այդ թվում ուսուցիչների ատեստավորումը։ Անհրաժեշտ է հասնել դպրոցականների պատասխանատվության բարձրացմանն իրենց գիտելիքների որակի, ուսումնական և աշխատանքային կարգապահության պահպանման համար։

Կուսակցության քաղկոմները և շրջկոմները, շրջգործկոմները, կուսակցական կազմակերպությունները պետք է մշտական վերահսկողություն սահմանեն դպրոցի գործունեության, առանձնապես ուսումնադաստիարակչական պրոցեսի բոլոր կողմերի, կատարելագործման նկատմամբ, հասնեն դպրոցի աշխատանքում առկա թերությունների խպառ վերացման, դպրոցի գործունեության արդյունքները գնահատեն ըստ սովորողների գիտելիքների խորության ու կայունության, ըստ նրանց գաղափարական ու բարոյական հատկանիշների, այն բանով, թե որքանով են պատրաստ ինքնուրույն կյանքի։

Եվ ապա։ Միջնակարգ դպրոցը դառնում է 11-ամյա։ Նախատեսվում է երեխաների ուսումն սկսել վեց տարեկանից։ Դա հարուցում է կառուցվածքային փոփոխություններ, պահանջում ստեղծել նոր ուսումնական ծրագրեր։

լուսավորության մարմինները, մանկավարժական կոլեկտիվները, համապատասխան գիտական ստորաբաժանումները պետք է նաև կազմակերպչական, գիտամեթոդական մեծ աշխատանք տանեն այդ ուղղությամբ, հոգեբանորեն վերակառուցվեն նոր պայմաններին համապատասխան։

Ռեֆորմը նախատեսում է պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության համակարգի հետագա զարգացում՝ որպես բանվոր դասակարգի նոր համալրում պատրաստող կարևոր աղբյուրի և ժողովրդական կրթության անբաժանելի մասի։

Հանրապետության 101 տեխնիկական և պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում 180 տարբեր բանվորական մասնագիտություններ են յուրացնում ավելի քան 50 հազար պատանիներ ու աղջիկներ։ Համակարգի ուսումնական հաստատություններն ունեն 1700 կաբինետներ, լաբորատորիաներ և արտադրական արհեստանոցներ։ Սովորողների ընդունելության և երիտասարդ բանվորների պատրաստման պլանները ամբողջությամբ վերցրած կատարվում են։ Ընթացիկ հնգամյակի տարիներին ուսումնարաններն ավարտել են մոտ 103 հազար մասնագետ բանվորներ,որոնցից 85 տոկոսը՝ միջնակարգ կրթությամբ։

Նշելով ձեռք բերվածը, մենք չենք կարող չտեսնել նաև լուրջ թերություններն ու վրիպումները, դժվարություններն ու պրոբլեմները։

Հանրապետության պրոֆտեխկրթության պետական կոմիտեն, շատ ուսումնարանների մանկավարժական կոլեկտիվները, կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները լուրջ թերացումներ ունեն ուսումնադաստիարակչական պրոցեսի կազմակերպման, դասատուների ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակման գործում, ֆինանսատնտեսական աշխատանքում։ Առանձնակի մտահոգություն է պատճառում ուսումնադաստիարակչական պրոցեսի վիճակը ուսումնարաններում, որոնցից շատերում կարգապահության կոպիտ խախտումների, սովորողների գնահատականների հանիրավի բարձրացման բազմաթիվ փաստեր կան։ Շարունակում են մեծ տոկոս կազմել մաղումները, սովորողների անհարգելի բացակայությունները, որ առանձին տեղերում սիստեմատիկ բնույթ են կրում, հասնելով 40—50 տոկոսի։ Մի շարք ուսումնարաններում շատ ցածր է սովորողների տեսական և գործնական գիտելիքների մակարդակը, անբավարար է հասարակագիտական առարկաների դասավանդման դրվածքը։

Երիտասարդ բանվորական կադրերի դաստիարակության գործում առկա լուրջ թերությունների հետևանքով շրջանավարտների մի զգալի մասն աշխատանքի չի ներկայանում ըստ նշանակման։ Նրանց ընդամենը 48—50 տոկոսն է աշխատում բազային ձեռնարկություններում՝ ստացած մասնագիտության համապատասխան։ Մյուս կողմից, այդ նույն ձեռնարկությունները պատշաճ ուշադրություն և պատասխանատվություն չեն ցուցաբերում շրջանավարտներին աշխատանքի տեղավորելիս։ Երիտասարդ շատ բանվորներ, ոտք դնելով արտադրության շեմին, պատշաճ հոգատարության և ուշադրության չեն արժանանում ձեռնարկությունների ղեկավարների և հասարակական կազմակերպությունների կողմից, նրանց աշխատանք չի տրվում ըստ ստացած մասնագիտության։

Դեռևս լուրջ թերություններ կան բանվորական կադրերի պատրաստման պլանավորման գործում։ Այդ թերությունների մասին ասվեց նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1983 թվականի ապրիլյան պլենումում, բայց պրոֆտեխկրթության պետական կոմիտեն (նախագահ՝ ընկ. Ս. Միքայելյան) պատշաճ հետևություններ չի արել քննադատությունից։ Մինչև օրս էլ այստեղ բանվորական կադրեր են պատրաստվում՝ հաշվի չառնելով ժողովրդական տնտեսության ռեալ պահանջմունքները։ Զարմանք է հարուցում նաև հանրապետության պետպլանի պասսիվ հայեցողական դիրքը։

Երևանում, օրինակ, գործող 36 ուսումնարաններն ամեն տարի պատրաստում են ավելի քան 10 հազար երիտասարդ բանվորներ։ Չնայած դրան, մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները, շինարարական և այլ կազմակերպությունները բանվորական կադրերի սուր պակաս են զգում։ Աշ-



խատանքի պետական կոմիտեի տվյալներով, 1982, 1983 թվականներին մայրաքաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները մոտավորապես 2800 փականագործների, 1750 խառատների, 1350 մանածագործուհիների, 800 ֆրեզորդների, 930 զոդողների և այլ բանվորական կադրերի կարիք են ունեցել։ Հարց է ծագում, մի՞թե չէր կարելի երկու տարվա ընթացքում կադրերի այդ պահանջը բավարարել ուսումնարանների 20 հազար շրջանավարտների հաշվին։ Բանից պարզվում է՝ ոչ, քանի որ նրանց գերակշռող մեծամասնությունը սովորել է այնպիսի մասնագիտություններ, որոնց կարիքը ժողովրդական տնտեսությունը այսօր չունի։ Ոսկերիչները և դերձակները, ավտոհավաքողները և ավտոէլեկտրիկները, խոհարարները և հրուշակագործները, վաճառողները և վարսավիրները, բնականաբար, չեն կարող լրացնել մեքենաշինական, տեքստիլ ձեռնարկությունների, կառույցների որակյալ բանվորական կադրերի պակասը։

Մենք իրավամբ դժգոհ ենք պրոֆտեխկրթության համակարգի աշխատանքից գյուղատնտեսության մասնագետների պատրաստման հարցում։ Բայց դրա հետ մեկտեղ պետք է լուրջ պահանջներ ներկայացնել նաև հանրապետության գյուղատնտեսության մինիստրությանը, մի շարք շրջանների կուսակցական, սովետական մարմիններին, որոնք չեն օգնում, հոգ չեն տանում գյուղական պրոֆտեխուսումնարանների ուսումնանյութական բազայի ամրապնդման մասին։ Գյուղական 15 ուսումնարաններից 11-ը չունեն ուսումնական տնտեսություններ, իսկ մյուս 4-ի տրամադրության տակ կա ընդամենը 30 հեկտար հող։

Ռեֆորմի հաջող իրականացումը պահանջում է, որ բանվոր-մասնագետների պատրաստման պլանավորման, նրանց դաստիարակության, մասնագիտական կողմնորոշման հարցերում սերտորեն փոխկապակցված աշխատեն պրոֆտեխկրթության պետական կոմիտեն, պետպլանը, աշխատանքի պետական կոմիտեն, լուսավորության մինիստրությունը, ՀԼԿԵՄ Կենտկոմը, շահագրգռված մինիստրություններն ու գերատեսչությունները։

Դա առավել ևս կարևոր է, քանի որ ռեֆորմով նախատեսվում է դպրոցականների ընդունելությունը պրոֆտեխուսումնարաններում ավելացնել մոտավորապես երկու անգամ։ Այս հանգամանքը պրոֆտեխկրթության պետական կոմիտեից և պետպլանից պահանջում է կազմել և իրականացնել նաև նոր պրոֆտեխուսումնարանների կառուցման համապատասխան ծրագիր՝ ուշադրություն դարձնելով դրանց ճիշտ տեղաբաշխմանը։

Հայտնի է, որ ամեն գործում հաջողությունը որոշում են կադրերը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։ Հանրապետության պրոֆտեխկրթության համակարգում աշխատում են արտադրական ուսուցման մոտ 5 հազար վարպետներ, դասատուներ ու դաստիարակներ։ Ընդհանուր առմամբ նրանք քաղաքականապես հասուն, ձեռներեց աշխատողներ են, ունեն մանկավարժական ու մասնագիտական անհրաժեշտ պատրաստություն։

Սակայն կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության կուսակցական սկզբունքների խախտման պատճառով ղեկավար աշխատողների և դասատուների մեջ կան այնպիսիք, որոնք չարաշահում են պաշտոնեական դիրքը, թույլ տալիս մեր բարոյականության նորմերի խախտումներ։ Պրոֆտեխկրթության պետական կոմիտեն մինչև օրս չունի կադրերի լավ ռեզերվ, պլանաչափ աշխատանք չի տանում նրանց որակավորման բարձրացման նպատակով։

Պրոֆտեխկրթության կոմիտեն, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է խստացնեն պահանջկոտությունը պրոֆտեխուսումնարանների և բազային ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների, ղեկավարների, կոլեկտիվների նկատմամբ առաջադրված խնդրի կատարման համար. այն է՝ յուրաքանչյուր սովորողի բարձր մասնագիտական պատրաստության և լիարժեք միջնակարգ կրթության ապահովում, նրանց մեջ աշխատասիրության, կազմակերպվածության, բարձրարտադրողաբար աշխատելու ձգտման և կարողության դաստիարակում։ ՀԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտմիության քաղկոմներն ու շրջկոմները պետք է մշտական հոգատարություն հանդես բերեն պրոֆտեխուսումնարանների կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ, ամենօրյա օգնություն ցույց տան ու ղեկավարեն դրանց։

Երիտասարդության կրթման և դաստիարակության գործում կարևոր դեր ունեն միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները։ Ներկայումս հանրապետությունում գործում են 66 միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ՝ չորս մասնաճյուղերով, որոնցում միջին օղակի կադրեր են պատրաստվում 156 մասնագիտությունների գծով։ Միայն տասներորդ հնգամյակի ընթացքում և տասնմեկերորդ հնգամյակի երեք տարում նրանք տվել են շուրջ 122 հազար մասնագետ։

Ռեֆորմի հիմնական ուղղություններում շեշտվում է տեխնիկումներում և ուսումնարաններում պատանիների ու աղջիկների ուսուցումը պահպանելու և ընդլայնելու նպատակահարմարությունը ոչ լրիվ միջնակարգ կրթության բազայի վրա։ Ուստի անհրաժեշտ է առաջիկա տարիներին ընդլայնել այդ բազայի վրա կատարվող ընդունելությունը միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում։ Դրանով իսկ հնարավորություն կստեղծվի հաջողությամբ լուծելու տեխնիկումների և ուսումնարանների երկմիասնական խնդիրը՝ պատրաստել միջին օղակի մասնագետներ և իրականացնել ընդհանուր միջնակարգ կրթություն։

Պահանջվում է միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները լրջորեն վերակողմնորոշել դեպի հանրային արտադրության պահանջմունքների առավել լրիվ բավարարման ապահովումը։ Այդ կապակցությամբ հանրապետության պետպլանը և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Լ. Ղարիբջանյան) պետք է ավելի ճկուն արձագանքեն միջին օղակի մասնագետների պահանջարկի փոփոխություններին, ինչպես նաև հաշվի առնեն նոր ուղղությունների մասնագետների պատրաստման անհրաժեշտությունը և ըստ այդմ էլ շտկումներ մտցնեն համապատասխան պլանների մեջ։ Մյուս կողմից հարկ է բարելավել շրջանավարտների բաշխման ու աշխատանքի տեղավորման պրակտիկան։

Դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղությունները առաջադրում են նախադպրոցական համակարգի դաստիարակության հետագա կատարելագործման լուրջ խնդիրներ։ Դրանց լուծման հետ մեկտեղ անհրաժեշտ է հանրապետությունում լայն, նպատակասլաց աշխատանք ծավալել մանկամսուրների և մանկապարտեզների թվի շեշտակի ավելացման ուղղությամբ, քանի որ դրանցում երեխաների ընդգրկումը մեզ մոտ շատ ցածր է և կազմում է 37 տոկոս։

Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, խնդիր է դնում կատարելագործել սովորող երիտասարդության գաղափարաքաղաքական դաստիարակությունը։ Սովորող երիտասարդության կոմունիստական դաստիարակության առանցքը մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումն է։ Այստեղ կարևոր դեր ունի հասարակագիտական-հումանիտար առարկաների դասավանդումը։ Խոսքը միայն այն մասին չէ, որ սովորող պատանիներն ու աղջիկները պարզապես հաղորդակցվեն մեր հեղափոխական ուսմունքին, այլև, որ նրանց մեջ դաստիարակվեն գաղափարական խոր համոզվածություն, քաղաքական բարձր կուլտուրա։

Արդի պայմաններում մեծանում է երիտասարդներին նյութական ու հոգևոր արժեքների նկատմամբ ճիշտ վերաբերմունք, սպառողական տրամադրությունների նկատմամբ խորշանք ներարկելու, նրանց մեջ մեր հասարակության կյանքում դեռևս նկատվող բացասական երևույթների դեմ պայքարելու վճռականություն դաստիարակելու նշանակությունը։ Երիտասարդները պետք է համակվեն սոցիալիստական համակեցության կանոնների պահպանման, սովետական օրենքների անշեղ կիրառման գիտակցությամբ։

Դպրոցը պատանեկությանը պետք է դաստիարակի ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության ոգով, աճեցնի այնպիսի սերունդ, որը միշտ պատրաստ լինի պաշտպանելու իր բազմազգ սոցիալիստական հայրենիքը։ Հարկավոր է, նշվեց Կենտկոմի պլենումում, որ դպրոցում ոչ միայն խոսեն կոմունիստական բարոյականության թեմաների մասին, այլև երեխաներին սովորեցնեն իրենց վարքը կառուցելու այդ բարոյականությանը համապատասխան։

Դպրոցն ունի բոլոր հնարավորությունները և պետք է օգտագործի դրանք



գաղափարախոսական աշխատանքի կենտրոնի իր առաքելությունը հաջողությամբ կատարելու համար։ Այդ գործում վճռական դեր է պատկանում դպրոցի կուսակցական ու կոմերիտական կազմակերպություններին։

Ուսումնադաստիարակչական աշխատանքի համակարգում հատուկ տեղ են գրավում գեղարվեստական կրթությունը և գեղագիտական դաստիարակությունը։ Անհրաժեշտ է աշակերտների մեջ մանկուց զարգացնել գեղեցիկի զգացումը, նրանց մեջ ձևավորել գեղարվեստական բարձր ճաշակ, արվեստի ստեղծագործությունները, պատմության ու ճարտարապետության հուշարձանները, հայրենի բնության գեղեցկությունը գնահատելու ունակություն, դրանք պահպանելու և հարստացնելու ձգտում։

Առանձնահատուկ կարևորություն ունի աշակերտների ֆիզիկական զարգացումը։ Հանրապետությունում հետևողական աշխատանք է տարվում ուսումնանյութական բազայի ամրապնդման, նոր մարզադահլիճների ու մարզահրապարակների կառուցման, եղածների բարեկարգման նպատակով։ Որակական փոփոխություններ են կատարվել ուսուցչամարզչական կազմում։ Նրանց գերակշռող մեծամասնությունն ունի բարձրագույն մասնագիտական կրթություն։ Ընդլայնվում է մանկապատանեկան արտադպրոցական մարզական հաստատությունների ցանցը։ Լուսավորության մինիստրության համակարգի գրեթե հարյուր մարզադպրոցներում մարզական կոփվածք են ստանում 50 հազարից ավելի երեխաներ։

Սակայն աշակերտների ֆիզիկական դաստիարակության գործում կան լուրջ թերություններ և չլուծված պրոբլեմներ։ Հանրապետության մոտ 250 հանրակրթական դպրոցներ չունեն մարզադահլիճներ, շատերն էլ ապահովված չեն անհրաժեշտ մարզական գույքով։ Ինչպես տեսնում եք, անելիքները շատ են։ Աշակերտների ֆիզիկական դաստիարակության գործը խթանելու նպատակով հարկավոր է ավելի լայնորեն օգտագործել նաև մարզական կազմակերպությունների և ակումբների, ձեռնարկությունների և հիմնարկների բազան։

Դպրոցի ռեֆորմի հաջող իրականացումը պահանջում է բոլոր տիպերի արտադպրոցական հիմնարկների գործունեության արմատական կատարելագործում։ Վերջին տարիներս որոշ չափով ընդլայնվել, ամրապնդվել է այդ հիմնարկների նյութական բազան, բարելավվել է դրանց կադրային կազմը։ Տասնյակ հազարավոր երեխաներ զբաղվում են գեղարվեստական ինքնագործունեությամբ, կիրառական արվեստով, տեխնիկական ստեղծագործությամբ, բնության պահպանությամբ։

Սակայն դեռ շատ բան պետք է արվի արտադպրոցական հիմնարկների գործունեության, արտաուսումնական դաստիարակչական աշխատանքի կատարելագործման, կադրերի պատրաստման և մեթոդական օգնության իրականացման ասպարեզում։ Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, քաղսովետներն ու շրջսովետները պետք է հոգ տանեն յուրաքանչյուր քաղաքում, յուրաքանչյուր շրջանում անհրաժեշտ արտադպրոցական հիմնարկների ստեղծման մասին, որոնք պետք է դառնան երեխաների տեխնիկական, գեղարվեստական ստեղծագործության, ֆիզկուլտուրային և սպորտային պարապմունքի կենտրոններ։ Արտադպրոցական հիմնարկներին է բաժին ընկնում ըստ բնակության վայրի երեխաների հետ տարվող դաստիարակչական աշխատանքի հիմնական ծավալը։ Այս աշխատանքը, նրանց հանգստի և ժամանցի կազմակերպումը արտաուսումնական աշխատանքի օրգանական շարունակությունն են, մեծապես նպաստում են նրանց ճիշտ դաստիարակությանը։ Այստեղ շատ բան պետք է անեն տեղական սովետները, մանավանդ որ բնակարանային շահագործման գրասենյակների, տնային կառավարչությունների մի մասի անբարեխիղճ, անտարբեր վերաբերմունքի հետևանքով ըստ բնակության վայրի տարվող դաստիարակչական աշխատանքը ձևական բնույթ է կրում կամ լրիվ բացակայում է։

Գործի շահերը պահանջում են ուժեղացնել ընտանիքի և դպրոցի համագործակցությունը։ Շատ ծնողներ ճիշտ են օգտագործում ընտանիքի հարաճուն նյութակուլտուրական հնարավորությունները երեխաների մեջ հոգևոր լայն պահանջմունքների, աշխատասիրության, համեստության, խելացի պա-

հանցմունքների ձևավորման համար, ծնողական սերը զուգորդում են խստապահանջության հետ: Բայց լինում է և այլ կերպ:

Մեզ, օրինակ, չի կարող չանհանգստացնել այն հանգամանքը, որ երիտասարդների մի մասը ձգտում է աչքի ընկնել ոչ թե գիտելիքներով ու աշխատասիրությամբ, այլև արտասովոր վարք ու բարքով, գերնորաձև հագուստով, արտասահմանյան զանազան թանկարժեք իրերով, որոնք ձեռք են բերվել կամ գնվել, իհարկե, ծնողների կողմից կամ նրանց փողերով: Նման երևույթները մեծապես պայմանավորված են ընտանեկան դաստիարակության թերացումներով, ընտանիքի և դպրոցի ջանքերի տարանջատվածությամբ: Հարկավոր է գտնել ճիշտ ձևեր ուժեղացնելու համար ազդեցությունը, այդ թվում և մանկավարժական ազդեցությունը ընտանեկան դաստիարակության պրոցեսի վրա: Աշխատավորական կոլեկտիվների կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն իրենց աշխատողների երեխաների դաստիարակությանը, օգնեն ծնողներին այդ գործում, իսկ հարկ եղած դեպքում նրանցից խիստ հաշիվ պահանջեն ընտանեկան դաստիարակության մեջ թույլ տված թերացումների ու վրիպումների համար:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում բարձր գնահատական տրվեց սովետական ուսուցչին, որը ժողովրդական կրթության կենտրոնական դեմքն է: Հանրապետությունում աշխատում են մոտ 55 հազար ուսուցիչներ, դասատուներ, արտադրական ուսուցման վարպետներ: Նրանք հիմնականում հմուտ, բանիմաց կադրեր են: Մեր ուսուցչական այդ բազմահազարանոց բանակի ջանքերով ենք հասել ժողովրդական կրթության աննախադեպ հաջողությունների: Ե՛վ ժողովուրդը, և՛ կուսակցությունը բարձր են գնահատում նրանց ազնիվ, մեծ ու շնորհակալ աշխատանքը: Կուսակցությունը մշտապես միջոցառումներ է իրականացնում ուսուցչի հասարակական վարկն ու հեղինակությունը բարձրացնելու համար:

Վերջին տարիներս հանրապետությունում զգալի առաջընթաց է կատարվել հանրակրթական դպրոցները բարձրագույն կրթությամբ ուսուցիչներով ապահովելու գործում: Սակայն մանկավարժական կադրերի պատրաստման պլանավորումը լուրջ բարելավման կարիք ունի: Ներկայումս հանրապետությունում գործում են մանկավարժական չորս բուհեր և հինգ ուսումնարաններ: Բացի այդ, մի շարք մասնագիտությունների գծով մանկավարժական կադրեր է պատրաստում նաև Երևանի պետական համալսարանը:

Մասնագետների պատրաստման գործում գոյություն ունեցող կրկնորդման, մասնագետների պահանջարկը ոչ ճիշտ հաշվի առնելու, բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում դաստիարակության ցածր մակարդակի պատճառով, որի արտահայտություններից մեկն էլ ըստ նշանակման աշխատելուց շատ շրջանավարտների խուսափելն է, հանրապետությունում ստեղծվել է մի վիճակ, երբ որոշ վայրերում ( և առաջին հերթին մայրաքաղաքում) գոյացել է մանկավարժական կադրերի ավելցուկ, իսկ մյուսներում, ընդհակառակն, պակաս է զգացվում: Կադրերի հարցում եղած պահանջարկին ոչ ճկունորեն արձագանքելու հետևանքով շարունակվում է այնպիսի մասնագետների պատրաստումը, որոնց կարիքը ներկայումս չկա և, ընդհակառակն, չեն պատրաստվում այնպիսի մասնագետներ, որոնց պակասը զգացվում է:

Պետպլանը, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության, լուսավորության մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է բարելավեն մանկավարժական կադրերի պատրաստման պլանավորումը, բարձրացնեն պատրաստման որակը, կատարելագործեն դասատուների որակավորման բարձրացման համակարգը: Անհրաժեշտ է ընդլայնել մանկավարժական կադրերի նպատակային պատրաստումը, առանձնապես լեռնային ու նախալեռնային շրջանների համար՝ ակտիվորեն կիրառելով արտամրցութային ընդունելությունը բուհերում:

Մեր երկրում մշտապես հոգ է տարվում ժողովրդական կրթության աշխատողների աշխատապայմանների բարելավման, նրանց բարեկեցության բարձ-



րացման մասին: Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և ՀԱՄԿԽ-ն արդեն ընդունել են որոշում մանկավարժների աշխատավարձի բարձրացման մասին: Կկրճատվի դպրոցների ու պրոֆտեխուսումնարանների դիրեկտորների ուսումնական ծանրաբեռնումը, դասարաններում կպակասեցվի աշակերտների թիվը: Այս ամենը, անկասկած, կնպաստի մանկավարժական աշխատանքի արդյունավետության և ուսման որակի բարձրացմանը: Կուսակցական կազմակերպությունները, սովետական մարմինները, առանձնապես գյուղական շրջաններում, պետք է ամենալուրջ ուշադրությունը նվիրեն մանկավարժների աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանների բարելավմանը, սկսած նրանց բնակարանով, վառելիքով ապահովելուց և վերջացրած բժշկական սպասարկումով ու սանատորային բուժումով, կենցաղային և կուլտուրական սպասարկումով:

Ռեֆորմի հաջող իրականացման համար անհրաժեշտ է այսուհետ ևս ամրապնդել լուսավորության նյութատեխնիկական բազան: Միայն վերջին 13 տարում հանրապետությունում կառուցվել ու շահագործման են հանձնվել 360 հազար աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ: Շինարարության նման տեմպերի շնորհիվ մենք հիմնականում լուծել ենք դպրոցական շենքերով ապահովվածության խնդիրը: Դրա հետ մեկտեղ չի կարելի մոռանալ, որ հանրապետության շատ դպրոցներ մինչև օրս չունեն ուսումնադաստիարակչական աշխատանքի կազմակերպմանը համապատասխանող ուսումնական շենքեր, աշակերտների մի մասը առայժմ զուրկ է առաջին հերթում դպրոց հաճախելու հնարավորությունից: Շատ դպրոցներում չկան ուսումնական կաբինետներ, լաբորատորիաներ, մարզադահլիճներ, արհեստանոցներ, զգացվում է ուսուցման տեխնիկական միջոցների, կահույքի, հաստոցների, գյուղատնտեսական մեքենաների և այլ սարքավորումների, ուսումնադաստիարակչական պրոցեսի և աշակերտների աշխատանքային ուսուցման կազմակերպման համար անհրաժեշտ մյուս նյութերի և պարագաների պակաս: Բացի այդ, հանրապետության լուսավորության մինիստրության և պետպլանի կատարած հաշվարկներով, առաջիկա տասնամյակում աշակերտների թիվը կավելանա մոտավորապես հարյուր հազարով, որոնց համար նույնպես անհրաժեշտ է ստեղծել լրացուցիչ նյութատեխնիկական բազա:

Անհրաժեշտ է, որ հանրապետության Մինիստրների խորհուրդը, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների գործկոմներն ապահովեն անհրաժեշտ քանակությամբ նոր դպրոցների և պրոֆտեխուսումնարանների շինարարությունը, դպրոցական շենքերի ու շինությունների ժամանակին վերանորոգումը, բարելավեն դպրոցներին անհրաժեշտ գույքի, ուսումնադիտողական պարագաների մատակարարման գործը, յուրաքանչյուր դպրոց և պրոֆտեխուսումնարան ամրացնեն բազային ձեռնարկության, կազմակերպության, հիմնարկի:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի առաջադրած խնդիրների հաջող իրականացումը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, պահանջում է կատարելագործել ժողովրդական կրթության կուսակցական ղեկավարման ոճն ու մեթոդները, բարձրացնել կազմակերպչական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը, ուսումնական հաստատությունների կուսակցական կազմակերպությունների մարտունակությունը:

Կուսակցական կոմիտեները պետք է ապահովեն բոլոր սովետական, տնտեսական, արհմիութենական և կոմերիտական մարմինների, դպրոցի և աշխատավորական կոլեկտիվների կոորդինացված գործողությունները ռեֆորմի իրականացման բնագավառում, բանիմաց կերպով լուծեն կրթության զարգացման հարցերը:

Հարկավոր է բարելավել ղեկավար և մանկավարժական կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործը, բարձրացնել կուսակցական կազմակերպությունների և մանկավարժական կոլեկտիվների պատասխանատվությունը ուսումնադաստիարակչական պրոցեսի որակի բարձրացման, աշակերտների աշխատանքային դաստիարակության, ուսուցման և մասնագիտական կողմնորոշման բարելավման համար:

քերը։ Մենք պարտավոր ենք մշտապես և խորը վերլուծել հնգամյակի պլանային առաջադրանքների, մեր սոցիալ-տնտեսական ծրագրերի կատարման ընթացքը և ժամանակին ձեռնարկել դրանց լիակատար իրականացումը երաշխավորող անհրաժեշտ միջոցներ։

Մշտապես մեր ուշադրության կենտրոնում պետք է գտնվեն հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության տեխնիկական վերազինման, արտադրանքի որակի բարելավման և խնայողության ռեժիմի ուժեղացման հարցերը։ Մեր հատուկ հոգածության առարկան պետք է դառնա ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքի արտադրողականության արտապլանային բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ իջեցման սոցիալիստական պարտավորությունների կատարումը։

Կառավարման նոր ձևերի որոնման, դրա կատարելագործման հետ մեկտեղ հարկավոր է, որ մենք հետևողականորեն բարձրացնենք կառավարման արդեն գոյություն ունեցող ինստիտուտների արդյունավետությունը։ Մենք պետք է գործարար կերպով, լրջորեն և կուսակցականորեն ձեռնամուխ լինենք վարչական ապարատը կրճատելու՝ Կենտկոմի պլենումի պահանջի կատարմանը։ Ընդ որում պետք է մի կողմ թողնել սուբյեկտիվ նկատառումները և առաջնորդվել այն գիտակցությամբ, որ դա միանվագ կամպանիա չէ։

Էկոնոմիկայի զարգացման մեջ առաջացած դժվարությունները հաղթահարելու և նոր բնագծեր դուրս գալու համար, ինչպես Մոսկվայի «Սերպ ի մոլոտ» գործարանում կայացած հանդիպման ժամանակ նշեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, հարկավոր են բարձրարտադրողական աշխատանք և արտադրության զարգացման գործում տնտեսատիրոջ շահագրգռվածություն յուրաքանչյուրի մոտ։

Այս տարվա աշխատանքի արդյունքները վճռական կլինեն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, հատկապես արդյունաբերության մեր հնգամյա պլանների ճակատագրի համար։ Մեր կոնկրետ խնդիրները մենք սահմանել ենք Կենտկոմի հունվարին և մարտին կայացած պլենումներում, դրանք ուժի մեջ են, ուժի մեջ է մնում նաև սոցիալիստական մրցության նշանաբանը՝ արդյունաբերության պլանը կատարել 103 տոկոսով, աշխատավորական բոլոր կոլեկտիվների ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարել լրիվ և ժամկետից շուտ։ Իսկ դա պահանջում է մեր տնտեսական, քաղաքական աշխատանքի լարվածության հետագա բարձրացում։

Թե՛ սովետների գործունեության բարելավումը, թե՛ դպրոցական ռեֆորմի կենսագործումը և թե սոցիալ-տնտեսական ու կուլտուրական զարգացման խնդիրների կատարումը պայմանավորված են առաջին հերթին մարդկանցով, կադրերով, նրանց աշխատանքով, ստեղծագործական եռանդով, կարողություններով, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատու վերաբերմունքով։

Մենք պետք է մշտապես սևեռուն ուշադրություն նվիրենք կադրային հարցերին, հետևողականորեն կատարելագործենք մեր ամբողջ աշխատանքի ոճը։

«Կադրերը կուսակցության ու պետության իրոք ոսկե ֆոնդն են,— Կենտկոմի պլենումում նշեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն։— Այդ ֆոնդը կարիք ունի մշտական համալրման, թարմ ուժերի ներհոսի... Կադրերի հետ տարվող աշխատանքում, ինչպես ուրիշ ոչ մի տեղ, կարևոր է հստակ, մտածված համակարգը։ Այստեղ թույլատրելի չեն կադրային կազմի ոչ հաճախակի փոխելիությունը, ոչ էլ որևէ ոսկրացումը»։

Կուսակցական կոմիտեների կողմից հետևողականորեն իրականացվող կադրային աշխատանքի շնորհիվ, ինչպես գիտեք, մեզ հաջողվեց վերջին տարիներս կուսակցական, սովետական և տնտեսական մարմինները, հասարակական կազմակերպությունները որոշակիորեն ամրապնդել քաղաքականապես գրագետ, որակյալ, բանիմաց աշխատողներով, բարելավել նրանց որակական կազմը։ Ուրախալի է նշել նաև այն, որ կայուն միտում է դառնում կանանց ակտիվ առաջքաշումը ղեկավար աշխատանքի։ Դրա հետ մեկտեղ կադրերի հետ տարվող աշխատանքում, մասնավորապես նրանց ընտրության ու տեղաբաշխման գործում, դեռևս քիչ չեն թերությունները։ Տակավին կան դեպքեր, երբ ղեկավար պաշտոնի են առաջ քաշվում բազմակողմանիորեն չստուգված, անհրաժեշտ գործնական և քաղաքական հատկանիշներ չունեցող մարդիկ։ Իսկ նման սխալները թանկ են նստում. գործը ձախողվում է, կոլեկտիվի աշխատանքը տուժում այդպիսի ղեկավարի պատճառով։ Սխալներից զերծ մնալու երաշխիքը կադրերի ռեալ, լավ ռեզերվի ստեղծումն է։ Իսկ դրա համար պահանջվում է մշտապես աշխատավորական կոլեկտիվներում որոնել և գտնել ընդունակ մարդկանց, նախապատրաստել նրանց ղեկավար աշխատանքի։ Ահա թե ինչպես պետք է ձևավորվի ռեզերվը։ Եվ դա պետք է դառնա յուրաքանչյուր կուսակցական կոմիտեի կենսական գործը։

Ղեկավար կադրերին նույնպես հարկավոր է սովորեցնել՝ սովորեցնել ղեկավարի աշխատանք, սովորեցնել մտածել մասշտաբայնորեն, էկոնոմիկայի զարգացման որակապես նոր փուլի խոշոր պրոցեսի մեջ հստակորեն տեսնել իրենց գլխավորած տեղամասերի նպատակներն ու խնդիրները, հասնել այն բանին, որ նրանք լիովին տիրապետեն աշխատանքի լենինյան ոճին։

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում հատկապես շեշտվեց, որ ժողովրդատնտեսական խնդիրների լուծման գործում բացառիկ մեծ ու բազմազան են մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների դերն ու պատասխանատվությունը։ Այն մասին, թե որքան հաջող է աշխատում այս կամ այն ղեկավարը, նշվեց պլենումում, պետք է դատել ոչ միայն ըստ պլանային ցուցանիշների, պայմանագրային պարտավորությունների լրիվ և ժամանակին կատարման, այլև ըստ այն ռեալ ջանքերի, որ նպատակամղված են մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավմանը։

Կենսագործելով Կենտկոմի պլենումի հիմնադրույթները, մենք պարտավոր ենք կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության կարևորագույն գործը բարձրացնել կուսակցության այսօրվա մեծ պահանջների մակարդակին։

Մեր կուսակցությունը և ժողովուրդը գնում են դեպի ՍՄԿԿ XXVII համագումար։ Մենք պետք է աշխատենք առավելագույն լարվածությամբ, որպեսզի աշխատանքային և ստեղծագործական նոր նվաճումներով դիմավորենք մեր հասարակության կյանքի այդ խոշորագույն իրադարձությունը, բոլոր նախադրյալներն ստեղծենք՝ հաջողությամբ եկող հնգամյակ թևակոխելու, ապագայում էլ ավելի բարձր բնագծեր նվաճելու համար։

«Մեզ համար՝ կոմունիստներիս համար,— ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— համագումարի նախապատրաստությունը ձեռք բերվածի իմաստավորման, ամփոփման ժամանակաշրջան է, այն ամբողջ դրականի ակտիվ ամրապնդման ժամանակաշրջան, ինչին մենք հասել ենք։ Դա նաև թույլ տրված սխալներից դասեր առնելու, թերությունները ինքնաքննադատաբար վերլուծելու, դրանց հաղթահարման ուղիները և գլխավորը՝ նոր մեծ խնդիրների լուծման ուղիները որոշելու ժամանակաշրջան է»։

Մեր խնդիրները վիթխարի են, նպատակները՝ մեծ։ Եվ մենք կկատարենք այդ խնդիրները, կհասնենք այդ նպատակներին, ինչպես միշտ իրականացրել ենք մեր մեծ կուսակցության առաջադրանքները, նրա կանխագծումները։

Վերջում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը Կենտկոմի պլենումի անունից ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին հավաստիացրեց, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորներն անձնվիրաբար կաշխատեն ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի ապրիլյան պլենումի որոշումների, կոմունիստական արարման՝ կուսակցության առաջադրած նոր խնդիրների կենսագործման համար։ (Բուռն ծափահարություններ)։

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՎ ՏՆՏԵՍԱՎԱՐՄԱՆ ՄԵԹՈԴՆԵՐԸ

**Տ. ԲԱՐԱՆԵՆԿՈՎԱ**
ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտի ավագ գիտաշխատող

*ԵՐԿՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ինտենսիվ ռելսերի վրա փոխադրելը ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության առանցքային խնդիրներից մեկն է և թելադրվում է ոչ միայն գիտատեխնիկական առաջընթացով, այլև աշխատանքային ռեսուրսների աճի տեմպերի նվազմամբ։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան և ապրիլյան պլենումներում ընկ. Կ. Ու. Չեռնենկոն վերստին շեշտեց էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման կարևորությունը։ Նա ուղղակի նշեց, որ առաջիկա տասներկուերորդ հնգամյակը նախ և առաջ պետք է դառնա մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացման գործում վճռական բեկման հնգամյակ։*

*Էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման կարևոր խթան են աշխատավորների ակտիվության բարձրացումը, բոլոր ռեզերվների մոբիլիզացումն ու օգտագործումը։ «Այն բանով,— նշում է ընկ. Չեռնենկոն, թե մենք ինչպես կկարողանանք մոբիլիզացնել ժողովրդի հոգևոր եռանդը, բարձրացնել նրա աշխատանքային ու սոցիալական ակտիվությունը, մեծապես պայմանավորված են պլանների կատարումը, մեր առաջընթացի տեմպերը»։*

*Էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման պայմաններում առանձնապես կարևոր են բանուժի ռացիոնալ օգտագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացման, նյութական խթանման մեթոդների կատարելագործման հիման վրա նրա կրճատման պրոցեսի արագացումը։*

*Բանուժի խնայողաբար ու արդյունավետ օգտագործման առումով աշխատավորական կոլեկտիվների շահագրգռության բարձրացմանը էականորեն նպաստում են շչյոկինյան մեթոդն ու դրա տարբերակները՝ արդյունաբերական ձեռնարկությունների կոնկրետ պայմաններին և ճյուղային առանձնահատկություններին համապատասխան։*

*Շչյոկինոյի քիմիական կոմբինատում (ներկայումս «Ազոտ» արտադրամիավորում) սկիզբ առած այս մեթոդի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմը 1969 թ. հոկտեմբերին ընդունեց որոշում, որտեղ նշված են Շչյոկինոյի տնտեսափորձի դրական արդյունքները և հանձնարարվում է լայնորեն կիրառել այն։*

*Շչյոկինյան համակարգի հետագա զարգացումը բնութագրվում է ինչպես արդյունաբերական տարբեր ճյուղերի ձեռնարկությունների քանակական ընդգրկումով, այնպես էլ դրա խորացմամբ, տարբերակների ստուգմամբ։ Օրինակ՝ Պերմի փորձով, որն առաջին անգամ անցկացվեց այդ քաղաքի էլեկտրատեխնիկական գործարանում, ստուգվեց նյութական խթանման նոր ցուցանիշը. աշխատավարձի ֆոնդի համադրումը մեկ ռուբլու իրացված արտադրանքին։ Տվյալ դեպքում աշխատավարձի պլանային ֆոնդը դարձավ ձեռնարկության արտադրական, տեխնիկական և տնտեսական ցուցանիշներով պայմանավորված ածանցյալ մեծություն։ Այն կարող էր հնգամյակի տարիներին փոխվել կամ մնալ հաստատուն՝ արտադրության զարգացման ուղիներին և բնույթին, անցկացվող կազմակերպական-տեխնիկական և տնտեսական միջոցառումներին, արտադրանքի կառուցվածքի, աշխատատարության և այլ փոփոխություններին համապատասխան։*

*Բաշկիրական փորձը, շչյոկինյան մեթոդից բացի, ներառնում է ևս երկու լրացուցիչ պայման. ձեռնարկությունները, ազատված աշխատողների թվաքանակի տեսակարար կշռի և աշխատանքի նորմավորման ձեռք բերած մակարդակի համեմատ, աշխատավարձի ֆոնդի խնայողության 30 տոկոսը փոխանցում են միավորմանը, այն իրենց միջև բաշխելու համար։ Բացի այդ, ձեռնարկություններում գոյացած նյութական խթանման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության ֆոնդերը ճշտվում են աշխատանքի արտադրողականության աճի հաշվառմամբ։*

*Վերոհիշյալ տնտեսափորձերը ցույց տվեցին ձեռնարկությունների ճյուղային առանձնահատկությունների հաշվառման անհրաժեշտությունը, դրսևորեցին աշխատավարձի ֆոնդի պլանավորման նորմատիվ մեթոդի առավելությունները, նյութական խթանման սահմանների ընդլայնման նշանակությունը։ Ակներև դարձավ աշխատողների թվակազմի կրճատման համար հավելավճարումների հետ մեկտեղ, այսպես ասած, կոլեկտիվ ստեղծագործական ակտիվության խթանման, ինչպես նաև պարգևատրման կարևորությունը՝ որպես գործավարձով աշխատող բանվորներին խրախուսելու առավել արդյունավետ ձև։*

*Ուշագրավ է Շչյոկինոյի քիմիագործների մեթոդի այն տարբերակը, որը կիրառվում է Կալուգայի «Քլորվինիլ» արտադրամիավորումում։ Այստեղ տվյալ մեթոդի տարրերը մտցված են միավորման բոլոր ստորաբաժանումների համար պարտադիր ստանդարտների մեջ։ Նման իրավիճակը, որն ապահովում է աշխատավարձի խնայողությունը միավորման յուրաքանչյուր ստորաբաժանման աշխատողների նյութական խրախուսման համար օգտագործելու կայուն երաշխիքներ (աշխատանքի արտադրողականության բարձրացման և բանուժի թվակազմի կրճատման վաղօրոք սահմանված առաջադրանքները կատարելու դեպքում), մեծապես շահագրգռում է նրանց՝ որոնելու և օգտագործելու ներարտադրական ռեզերվները։ Հարկ է նշել, որ արտադրության պլանը կատարելիս հավելավճարումների չափը նախապես որոշվում է հատուկ սանդղակով, ըստ ազատված աշխատողների թվակազմի։*

*Շչյոկինյան մեթոդը, որի հիմքը պլանավորման, աշխատանքի կազմակերպման և նյութական խթանման համակարգի կատարելագործման նկատմամբ կոմպլեքսային մոտեցումն է, զուգորդված աշխատավորական կոլեկտիվներում տարվող դաստիարակչական աշխատանքի հետ, ամենից առաջ նպաստում է անձնակազմի և նրա ազատված թվակազմի օգտագործման արդյունավետության բարձրացմանը։ Ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, տվյալ մեթոդի կիրառումը նպաստում է աշխատաժամանակի կորուստների, արտաժամյա աշխատանքների և կադրերի հոսունության կրճատմանը, աշխատանքային և արտադրական կարգապահության ամրապնդմանը, աշխատողների որակավորման մակարդակի բարձրացմանը և, ի վերջո՝ աշխատանքի արտադրողականության աճին։ Այսպես, թղթի-ցելյուլոզի արդյունաբերության մեջ, որի բոլոր ձեռնարկությունները 1977 թվականին անցան շչյոկինյան մեթոդին, մեկ տարում աշխատաժամանակի կորուստները նվազեցին 10 տոկոսով։ Բալախնինայի Ֆ. Է. Ձերժինսկու անվան կոմբինատում կադրերի հոսունությունը նվազեց մեկ երրորդով, գործալքումների թիվը կրճատվեց 20 տոկոսով։ Ավելի քան 4 հազար մարդ բարձրացրեց որակավորումը, յուրաքանչյուր երրորդ բանվորը տիրապետեց հարակից մասնագիտու-*

թյան, բանվորների միջին կարգը 3,47-ից հասավ 3,68-ի։

Նոր մեթոդի բազայի վրա ներարտադրական ռեզերվների մոբիլիզացումն իրականացվում է ինչպես կազմակերպական, սոցիալ-տնտեսական, այնպես էլ տեխնիկատեխնոլոգիական գործոնների կիրառմամբ։ Ճիշտ է, մեթոդի կիրառման սկզբնական փուլում ամենից առաջ օգտագործվում էին աշխատանքի ինտենսիվացման հետ կապված մակերեսային ռեզերվները, սակայն այն ուղեկցվում էր բովանդակության խորացմամբ, աշխատատեղերի մեքենայացմամբ, աշխատանքի և արտադրության ավելի լավ կազմակերպմամբ։ Հաջորդ փուլում աշխատանքի արտադրողականության աճի ռեզերվների օգտագործման կենտրոնն առավել չափով փոխադրվեց ողջ արտադրության ինտենսիվացման ոլորտը, առավելագույն փոխհատուցման խնդիրը լուծելով ոչ միայն աշխատանքի լավագույն կազմակերպմամբ, այլև ի հաշիվ մեքենաների, սարքավորումների, տեխնոլոգիայի։

ԲՍՍՀ-ի 50-ամյակի անվան «Պոլիմիր» միավորումում շչյոկինյան մեթոդը ստացավ հետագա զարգացում՝ տեխնոլոգիական տեղակայանքների կոլեկտիվ սպասարկման և միմյանց փոխարինելու սկզբունքի հիման վրա։ Դա զգալիորեն վերացնում է տեղակայանքների ավանդական, ըստ ագրեգատային գոտիների, այսինքն անհատական սպասարկման թերությունները։ Նոր մեթոդով աշխատանքի կազմակերպման էությունն այն է, որ տեխնոլոգիական պրոցեսն իրականացնում է բանվորների բրիգադը՝ առանց սպասարկման գոտիների բաժանում կատարելու, քանի որ բրիգադի յուրաքանչյուր անդամը կարող է ինքնուրույն աշխատել տվյալ տեխնոլոգիական բաժանմունքի կամ արտադրամասի բոլոր սարքերի ու ագրեգատների վրա։ Աշխատանքային պրոցեսի կոլեկտիվ վարումը բարձրացնում է նաև ընդհանուր պատասխանատվությունը վերջնական արդյունքների համար, թույլ է տալիս լրիվին օգտագործել արտադրակարողությունները, բացառում է սարքավորումների պարապուրդները՝ բանվորների բացակայության պատճառով։

Շչյոկինոյի «Ազոտ» միավորումում կրճատված անձնակազմի 42 տոկոսը բաժին է ընկնում մասնագիտությունների համատեղմանը, սպասարկման գոտիների ընդլայնմանն ու աշխատանքների ծավալների ավելացմանը, իսկ 58 տոկոսը՝ արտադրության վերակառուցմանն ու արդիականացմանը, կառավարման կառուցվածքի ու գործարանային պլանավորման կատարելագործմանը։ Համանման արդյունքներ է տալիս փորձի կիրառումը ազոտի արդյունաբերության 24 այլ ձեռնարկություններում։ Նոր մեթոդով աշխատելու հինգ տարում ճյուղում պայմանականորեն ազատվել է ավելի քան 15 հազար մարդ։ Այս մեթոդը զուգակցում է տնտեսական և սոցիալական բնույթի միջոցառումները, ձեռնտու է ինչպես արտադրական կոլեկտիվներին, այնպես էլ ամբողջ հասարակությանը։ Դրա կիրառումը թույլ է տալիս ոչ միայն արագացնել աշխատանքի արտադրողականության բարձրացման տեմպերը, այլև կրճատել աշխատավարձի ծախսումներն ու արտադրության ծախքերը, տնտեսել աշխատանքային ռեսուրսները և ստեղծել նորակառույցները կադրերով կոմպլեկտավորելու որոշակի ռեզերվ։ Այսպես, Շչյոկինոյի քիմիագործների կոլեկտիվը նոր մեթոդի կիրառման շնորհիվ ավելի քան երեք անգամ ընդլայնեց արտադրության ծավալը, չորս անգամ բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը, մեկ քառորդով, այսինքն 1.800 մարդով, կրճատվեց անձնակազմը։ Այստեղ տասը տարում արտադրության շահութաբերությունը բարձրացավ գրեթե 4 անգամ, յուրաքանչյուր մեկ ռուբլի ապրանքային արտադրանքի հաշվով աշխատավարձի ծախսումները 13,9 կոպեկից իջան 5-ի։

«Բաշնավթքիմգործարաններ» միավորումում տնտեսափորձի եռամյա կիրառմամբ զգալիորեն բարելավվեցին աշխատանքի տեխնիկատնտեսական ցուցանիշները, պետությունը ստացավ ավելի քան 670 հազար ռուբլու խնայողություն։ Գործող արտադրություններից ազատված աշխատողների հաշվին նոր օբյեկտների կոմպլեկտավորումը նվազեցնում է բնակելի, կենցաղային շենքեր կառուցելու և լրացուցիչ բանուժի համար անհրաժեշտ մյուս ծախսերի պահանջը։



Անցած հնգամյակի տարիներին շչյոկինյան մեթոդով աշխատող բոլոր արդյունաբերական ձեռնարկություններում ազատվեց շուրջ 800 հազար մարդ, որոնց զգալի մասը օգտագործվեց արդյունաբերական ձեռնարկությունների հազարավոր նոր արտադրամասերի ու տեղամասերի կոմպլեկտավորման համար։ Մասնագիտությունների (պաշտոնների) համատեղման, աշխատանքների սահմանված ծավալը բանվորների և ծառայողների ավելի պակաս թվակազմով կատարելու շնորհիվ աշխատավարձի ֆոնդի զգալի խնայողության հաշվին այդ ժամանակամիջոցում հավելավճարներ են ստացել շուրջ 700 հազար բանվորներ, ինժեներատեխնիկական աշխատողներ և ծառայողներ։ Նույնքան մարդ էլ միանվագ պարգևատրվել է աշխատողների թվակազմի արտապլանային կրճատման, աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցառումների մշակման ու իրագործման համար։

Տնտեսական արդյունավետության հետ միաժամանակ անհրաժեշտ է շեշտել նոր մեթոդի սոցիալական մեծ նշանակությունը։ Դա վերաբերում է հատկապես աշխատանքով բավարարված լինելու հանգամանքին։ Այն ձեռք է բերվում աշխատանքում ստեղծագործական, մտավոր հիմունքների զարգացմանը նպաստող կոմպլեքս միջոցառումների իրականացման, աշխատանքի կազմակերպման, պայմանների բարելավման, ձեռնարկության բարոյահոգեբանական կլիմայի առողջացման, աշխատանքի վարձատրության կատարելագործման հիման վրա։

Սակայն շչյոկինյան մեթոդն ամբողջությամբ վերցրած անբավարար է տարածվում։ Եղել են առանձին ժամանակահատվածներ, երբ նշված մեթոդով աշխատող ձեռնարկությունների թիվն անգամ կրճատվել է։ Դա, մեր կարծիքով, պայմանավորված է եղել արտադրության կազմակերպման ու պլանավորման նոր մեթոդների և ճյուղային պլանավորման պրակտիկայի հակասություններով, պրակտիկա, որը, մասնավորապես, խարսխվում է «ըստ բազայի», այսինքն՝ ըստ փաստորեն ձեռք բերված արդյունքների պլանավորելու սկզբունքի վրա, առանց հաշվի առնելու նորմավորման վիճակը, արտադրողականության մակարդակը, աշխատանքի պայմանները։

Քիմիական արդյունաբերության մինիստրության որակավորման բարձրացման ինստիտուտի կառավարման գիտական հիմունքների ամբիոնի կատարած հետազոտությամբ պարզվել է, որ նոր մեթոդի կիրառումը կասեցնող բազմազան պատճառների մեջ (որոնցից են տեխնիկայի անբավարար մակարդակը, տվյալ մեթոդի հնարավորությունները ճիշտ օգտագործելու՝ ղեկավարների անկարողությունը կամ չկամենալը, աշխատանքի կազմակերպման թերությունները և այլն) որպես կանոն աչքի են զարնում խթանման ու պլանավորման համակարգի թերությունները, սահմանված առաջադրանքների անկայունությունը։

Այդ կապակցությամբ մեծ նշանակություն ունի «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը, որին համապատասխան, արտադրամիավորումների (ձեռնարկությունների) հնգամյա և տարեկան պլաններն այսուհետև մշակվելու են ոչ միայն ձեռք բերված մակարդակի, այլև տնտեսագիտական և ինժեներական հաշվարկների հիման վրա։ Հաստատված պլանների կայունությունն ապահովելու համար սահմանված է ձեռնարկությունների, միավորումների, մինիստրությունների և գերատեսչությունների ղեկավարների կարգապահական ու նյութական պատասխանատվություն։ Սակայն, ինչպես ցույց է տվել աշխատանքի գիտահետազոտական ինստիտուտի կատարած ուսումնասիրությունը, բազմաթիվ ձեռնարկություններում ձգձգվում է տնտեսավարման նոր պայմաններին անցնելը, մի բան, որը խոչընդոտում է մասնավորապես և շչյոկինյան մեթոդի լայն կիրառմանը։

Հարկ է նշել նաև, որ անբավարար է մշակված շչյոկինյան մեթոդի ներդրման հրահանգը, որը տասը տարում ութ անգամ խմբագրվել է։ Տնտեսափորձի կիրառման պայմանների բազմակի վերանայումներն ուղղված են եղել նոր

մեթոդին անցնելիս ձեռնարկությունների համար հավասար մեկնարկների ապահովմանը, նրանց ինքնուրույնության ընդլայնմանը, բանուժի կրճատման նյութական խթանման ներգործության բարձրացմանը։ Սակայն պայմանների փոփոխությունները հաճախ հանգեցրել են հակառակ արդյունքների և կասեցրել տվյալ մեթոդի լայն տարածումը։

Շչյոկինյան մեթոդի կիրառման պայմանների վերջին տարբերակում, որը հաստատվեց 1978 թվականի ապրիլին, սահմանվում են նյութական խրախուսման նոր ձևեր։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նշված որոշմանը համապատասխան, նախատեսվում է մասնագիտությունների համատեղման և աշխատանքի սահմանված ծավալը բանվոր-ծառայողների ավելի պակաս թվակազմով կատարելու համար լրացուցիչ վարձատրել դրույքի կամ ռոճիկի մինչև 50 տոկոսի չափով։ Մասնագիտություններ համատեղող և իրենց հիմնական աշխատանքում առաջադրանքների լրիվ ծավալը կատարող բանվորները օգտվում են աշխատանքի վնասակար պայմանների համար նախատեսված արտոնություններից։

Պատասխանատվության բարձրացման հետ մեկտեղ նյութական խրախուսման և միանվագ պարգևատրման կարգ է սահմանված միութենական և հանրապետական այն արդյունաբերական միավորումների վարչական ապարատի աշխատողների համար, որոնք իրենց ենթագերատեսչական ձեռնարկություններում ապահովում են վերոհիշյալ մեթոդի հաջող ներդրումը։

Դրականորեն գնահատելով շչյոկինյան մեթոդի հետագա տարածման ու խորացման համար նախադրյալներ ստեղծող նոր պայմանները, հարկ է նշել, որ աշխատավարձի ֆոնդը, հաստիքների ցուցակը տնօրինելու և ավելորդ հաստիքները կրճատելու հարցում ձեռնարկություններին ավելի մեծ իրավունքներ ընձեռելը կընդլայներ բանվոր-ծառայողների ավելի պակաս թվակազմով արտադրանքի թողարկումն ավելացնելու՝ արտադրական կոլեկտիվների նախաձեռնությունը։

Այն կապակցությամբ, որ շչյոկինյան մեթոդով աշխատող ձեռնարկություններում աշխատավարձի ֆոնդի խնայողության զգալի մասը մնում է չըծախսված, տնտեսագիտական գրականության մեջ առաջադրվում են դրանք տարբեր նպատակներով օգտագործելու, մասնավորապես աշխատանքի անընդհատ ստաժի համար հավելավճարումների հատուկ ֆոնդ ստեղծելու առաջարկներ։ Մեր կարծիքով, դրան համաձայնել չի կարելի. աշխատավարձի ֆոնդի խնայողությունը պետք է ունենա խիստ նպատակային նշանակություն, պետք է փոխհատուցվեն աշխատանքի մեծ ծախսումները և դրա որակի աճը՝ կապված բանվոր-ծառայողների ավելի պակաս թվակազմով աշխատանքների մեծ ծավալի կատարման հետ։

Անհրաժեշտ է նշել, որ նոր մեթոդով աշխատող ձեռնարկություններն արտադրանքի թողարկման աճը, աշխատանքի արտադրողականության բարձրացումն ապահովում են ամենից առաջ արտադրության ինտենսիվացման հաշվին, առանց նոր շինարարության համար խոշոր հատկացումներ ստանալու, դրանով իսկ զրկվում են նաև բնակելի տների, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական ու կենցաղային նշանակության օբյեկտների շինարարության հատկացումներից։ Օրինակ, այդ նույն պատճառով Շչյոկինոյի քիմիագործները տասներորդ հնգամյակում չստացան ոչ մի բնակարան։ Դաուգավպիլսի քիմիական մանրաթելի գործարանի կոլեկտիվը, անցնելով նոր մեթոդին, աշխատողների թիվը մոտ 2 հազարով կրճատելով հանդերձ՝ կարողացավ արտադրության ծավալն ավելացնել երեք անգամ և ճյուղում հասնել ամենաբարձր արտադրողականության։ Սակայն անձնակազմի թվի կրճատման կապակցությամբ էականորեն պակասեցվեց գործարանի սոցիալ-կենցաղային զարգացման ֆոնդը։ Այս հանգամանքը թուլացնում է աշխատավորական կոլեկտիվների հետաքրքրությունը շչյոկինյան մեթոդի նկատմամբ, իսկ երկար ժամանակ այն կիրառող ձեռնարկություններում դժվար է լինում ապահովել անձնակազմի կայունացում։



Առաջվա պես հրատապ է մնում իրենց համար ավելորդ բանուժին աշխատանքի տեղավորելու պարտականությունից ձեռնարկություններին ազատելու և այդ ֆունկցիան համապատասխան ռեգիոնների ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմներին ու բնակչության աշխատանքի տեղավորման մասնագիտացված մարմիններին հանձնելու հարցը։

Բանուժի ազատման հարցերում կարևոր է ոչ միայն կոլեկտիվի շահերը ճիշտ զուգորդել հասարակության շահերի հետ, այլև անհրաժեշտ է, որ խթանման համակարգը հաշվի առնի ինչպես իրենց պրոֆեսիոնալ որակավորման մակարդակը բարձրացնող և ավելի մեծ ծավալի աշխատանք կատարող աշխատողների, այնպես էլ կրճատվողների շահերը, ամենից առաջ նրանց, ովքեր աշխատելու են մեկ ուրիշ կոլեկտիվում, իսկ երբեմն էլ փոխելու են իրենց զբաղմունքն ու բնակավայրը։ Այստեղ կարևոր նշանակություն ունի ժամանակին մշակել և իրականացնել կոնկրետ միջոցառումներ՝ հասարակության և յուրաքանչյուր աշխատողի շահերին համապատասխան։ Այս առումով դեռևս ներգործուն խթանների համակարգ չի ստեղծվել, մի բան, որը արգելակում է մեթոդի ներդրման պրոցեսը։

Այն պայմաններում, երբ աշխատողների պակասը դառնում է էկոնոմիկայի զարգացումը սահմանափակող գործոն, մեծանում է ավելի վաղ արված այն առաջարկների գործնականում իրականացնելու անհրաժեշտությունը, որոնք վերաբերում են ազատվող աշխատողների համար վերապատրաստման և վերաբաշխման արտոնյալ պայմաններ ապահովող իրավական ակտերի մշակմանը, հանգստյան օրերի համար նպաստի չափերի ավելացմանը, աշխատանքի տեղավորման մարմինների միջնորդությամբ նոր աշխատանք ստանալու մեջ առավելություն ունենալուն, աշխատանքի այլ վայր փոխադրվելիս գրանցման և միջին աշխատավարձի պահպանմանը, նոր մասնագիտություն տիրապետելու ժամանակամիջոցում արտադրանքի ցածր նորմաների սահմանմանը և այլն։

Շչյոկինյան մեթոդի հետագա տարածումը էապես կապված է աշխատանքի նորմավորման պրակտիկայի բարելավման հետ։ Սակայն շատ ձեռնարկություններում դեռևս գործում են արտադրանքի բազմաթիվ փորձնավիճակագրական նորմաներ։ Ինժեներատեխնիկական անձնակազմի և ծառայողների աշխատանքի նորմաների անբավարար մշակումը արգելակում է, օրինակ, պաշտոնների համատեղման և կատարվող աշխատանքի ծավալի ավելացման համար նրանց խրախուսելու շչյոկինյան մեթոդի կիրառումը և դրանով իսկ՝ անձնակազմի կրճատման պրոցեսը։ Այսպես, նոր եղանակով աշխատող 50 ձեռնարկություններում կատարված վերլուծությունը ցույց է տալիս, որ առաջին 4—5 տարում ազատված 23,8 հազար մարդուց 79 տոկոսը բանվորներ էին, 17 տոկոսը՝ ինժեներատեխնիկական աշխատողներ և 4 տոկոսը՝ ծառայողներ։ Հետագայում ինժեներատեխնիկական աշխատողներին ազատելու ինտենսիվությունը (բանվորների համեմատությամբ) նվազել է։

Տնտեսական մեխանիզմի կատարելագործման մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ շչյոկինյան մեթոդի հիմնական տարրերն ընդգրկվել են այդ մեխանիզմի մեջ, դարձել դրա բաղկացուցիչ մասը և կիրառվելու են բոլոր ձեռնարկություններում։ Սակայն տասնմեկերորդ հնգամյակում աշխատավարձի պլանավորման նորմատիվ մեթոդի համատարած կիրառումը և փոքրաթիվ անձնակազմով աշխատելու համար կոլեկտիվներին նյութապես խրախուսելու բնագավառում ձեռնարկությունների հնարավորությունների ընդլայնումը դեռևս չեն նշանակում, թե այսուհետև նշված մեթոդով են աշխատելու բոլոր ձեռնարկությունները, ինչպես սխալմամբ դա հասկանում են որոշ տնտեսագետներ։

Ներկայումս շչյոկինյան մեթոդը կոմպլեքսայնորեն օգտագործում է արդյունաբերական ձեռնարկությունների մոտ 6 տոկոսը։ Մեր կարծիքով, սխալ է նոր մեթոդի հետևորդներ համարել այն ձեռնարկություններին, որոնք օգտագործում են այդ եղանակի միայն առանձին տարրերը. այստեղ առանձին և պա-

տահական միջոցառումների ներդրումը պայմանավորված է ընթացիկ, այլ ոչ թե հեռանկարային շահերով:

Աշխատանքի շչյոկինյան մեթոդը կոմպլեքսային է, այն ներառնում է աշխատանքի պլանավորման, կազմակերպման ու խթանման կատարելագործման միջոցներ, իսկ գլխավորը՝ ենթադրում է բանուժի ռեալ կրճատման և աշխատանքի արտադրողականության աճի արագացման (պլանով նախատեսվածից ավելի) կազմակերպական-տեխնիկական և սոցիալական միջոցառումների մշակում ու իրագործում:

Վերոհիշյալ մեթոդի հիմնական տարրերի արտացոլումը կուսակցության և կառավարության որոշումների մեջ ուժեղացնում է դրանց խթանիչ դերը, սակայն դրանք չեն կարող գործել ավտոմատորեն: Այստեղ հարկավոր է կուսակցական մարմինների, կառավարման բոլոր օղակների ակտիվ, պլանաչափ դաստիարակչական և կազմակերպչական աշխատանքը:

Ինչպես հայտնի է, շչյոկինյան մեթոդի տարրերը արտացոլված են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ այժմ անցկացվող խոշոր մասշտաբի տնտեսափորձի պայմանների մեջ: Մոտ ապագայում, նոր եղանակով աշխատող ձեռնարկությունների թվի ավելացման հետ մեկտեղ, մեծ նշանակություն կստանա դրա արդյունավետության հետագա բարձրացումը: Այս կապակցությամբ հետաքրքրական է նշել շչյոկինյան մեթոդի զարգացման նոր փուլը. Նկատի է առնվում այն զարգացնել ոչ միայն «ուղղահայաց» այլև «հորիզոնական», այսինքն ռեգիոնների սահմաններում, մի բան, որը տնտեսական և սոցիալական մեծ արդյունք կտա: Օրինակ, Շչյոկինոյում, որտեղ արդյունաբերության, տրանսպորտի, առևտրի, կենցաղսպասարկման բոլոր ձեռնարկություններն աշխատում են այդ մեթոդով, հաջողվել է հաշվեկշռել աշխատանքային ռեսուրսները, վերացնել բանուժի ընդհանուր պակասը: Քաղաքի, շրջանի, հանրապետության մասշտաբով բոլոր ձեռնարկությունների անցումը նոր մեթոդին ավելի բարենպաստ պայմաններ կստեղծի աշխատանքային պրոցեսների ինտենսիվացման, աշխատանքի վարձատրության չափերի և դրա արդյունքների ավելի մեծ համապատասխանության հասնելու համար, կնվազեցնի աշխատողների այն ձեռնարկությունները փոխադրվելու միտումը, որտեղ աշխատանքի նվազ ծախսումներով կարելի է ստանալ նույն չափի աշխատավարձ:

Շչյոկինյան մեթոդը հանդես է գալիս նաև որպես աշխատանքի կազմակերպման ու վարձատրության նոր բրիգադային ձևի զարգացման կարևոր նախադրյալ, այն ձևի, որն ընթացիկ հնգամյակում դառնում է հիմնականը և, իր հերթին, կծառայի դրա լայն տարածմանը

---

# ՍԵԼԵԿՑԻԱՆ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

**Ռ. ԲԱԲԱՅԱՆ**
կենսաբանական գիտությունների դոկտոր

ԵՐԿՐԻ ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐՈՒՄ կարևոր տեղ է հատկացված գյուղատնտեսական գիտության հետագա զարգացմանը, որին ավելի ու ավելի բարձր պահանջներ են առաջադրվում: Ինչպես նշվեց ագրոարդյունաբերական համալիրի պրոբլեմին նվիրված համամիութենական տնտեսագիտական խորհրդակցությունում, կուսակցությունն ակնկալում է, որ գիտության աշխատողներն իրենց ստեղծագործական պոտենցիալը կնպատակամղեն գյուղատնտեսության զարգացումն արագացնելուն, պարենային ծրագիրն իրականացնելուն: Գյուղատնտեսական գիտության բաղկացուցիչ մասերից մեկը բույսերի սելեկցիան է, և պարենային ծրագրում սահմանված են մի շարք կարևորագույն կուլտուրաների ապագա սորտերի բերքատվության կոնկրետ ցուցանիշներ, որոնցով պետք է առաջնորդվեն սելեկցիոներները:

Այն ժամանակներից, երբ մարդիկ սկսեցին զբաղվել սելեկցիայով, համոզվեցին, որ դա բերքատվության ու հումքի որակի բարձրացման հզոր միջոց է: Սորտի, բույսերի սելեկցիայի դերը նշանակալիորեն մեծանում է հատկապես գյուղատնտեսական արտադրության բարձր ինտենսիվացման պայմաններում: Սորտն արտադրամիջոց է ու դրանով իսկ կենսաբանականից զատ նաև տնտեսական կատեգորիա է: Որպես այդպիսին, այն ունի մի շարք առանձնահատկություններ: Ամենից առաջ սորտը ապահովում է շրջակա միջավայրի գործոնների (հողատեսք, ռելիեֆ, արեգակի ճառագայթային էներգիա և այլն), ինչպես նաև մարդու կողմից հողի բերրիության բարձրացմանն ուղղված միջոցների (ոռոգում, քիմիացում և այլն) առավել արդյունավետ օգտագործում: Այստեղից հետևում է, որ գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացումը, որը մեր ժամանակների հրամայական պահանջն է, անքակտելիորեն կապված է սելեկցիայի առաջընթացի հետ: Այսպես, օրինակ, հաշված է, որ զարգացած գյուղատնտեսական արտադրության պայմաններում բերքատվության բարձրացման գործում սելեկցիայի բաժինը կազմում է. աշնանացան ցորենի գծով՝ 50 տոկոս, գարնանացան ցորենի՝ 20, գարնանացան գարու՝ 58, աշնանացան գարու՝ 32, եգիպտացորենի՝ 80, կարտոֆիլի՝ 19-ից մինչև 57 տոկոս և այլն: Արդի պայմաններում սելեկցիան փաստորեն վերածվել է գյուղատնտեսական արտադրության անհրաժեշտ բաժնի: Սորտի կամ հիբրիդի դերը, որպես բուսաբուծական արտադրության, հետևաբար և ողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի արդյունավետության բարձրացման միջոցի, գյուղատնտեսության ինտենսիվացմանը զուգընթաց աճում է: Մեր երկրում վերջին տարիներին կազմակերպվել են սելեկցիոն 50 խոշոր կենտրոններ, որոնք կոորդինացնում են ավելի քան 500 մասնագիտացված հաստատությունների աշխատանքները գյուղատնտեսական ամենատարբեր կուլտուրաների սելեկցիայի ասպարեզում: Այն հանգամանքը, որ սելեկցիայից ակնկալվող արդյունքները գիտական այլ ընագավառների համեմատությամբ առավել ռեալ են ու կանխատեսվող, հնարավորություն է ընձեռում երկրի կոմպլեքսային և նպատակային գիտատեխնիկական ծրագրերում պլանավորելու սելեկցիոն աշխատանքների ծավալը և արդյունքները ըստ կուլտուրաների:

ղատնտեսական կուլտուրաների 409, իններորդում՝ 699, իսկ տասներորդում՝ 835 նոր սորտեր ու հիբրիդներ։ 1978—1982 թթ. շրջանացվել են աշնանացան ցորենի 44, իսկ շրջանացումից հանվել՝ 16 սորտեր, համապատասխանորեն՝ 19 և 11 աշնանացան գարու, 33 և 5 գարնանացան գարու սորտեր։ Միշտ էլ ավելի մեծ թվով սորտեր են շրջանացվում, քան հանվում, իսկ այդ նշանակում է, որ մշակության մեջ գտնվող սորտային համակազմը շարունակաբար հարստանում է։

Արդի սելեկցիոն հետազոտությունների առանձնահատկություններից մեկը լայն չափերով դրանց ինտեգրացված լինելն է, փոխկապվածությունը ոչ միայն կոնկրետ տվյալ երկրի, այլ երկրների ամբողջ ռեգիոնի կամ նույնիսկ համաշխարհային մասշտաբով։ Վերն արդեն նշվել է սելեկցիոն ու կոորդինացիոն կենտրոնների միջոցով աշխատանքների համաձայնեցման, ելանյութերի փոխանակման մասին։ ՍՍՀՄ-ում գոյություն ունի բուսական գենոտիպերի կուտակման, պահպանման, օգտագործման մի այնպիսի խոշոր, ճանաչված հաստատություն, ինչպիսին Ն. Ի. Վավիլովի անվան համամիութենական բուսաբուծական ինստիտուտն է։ Այդ ինստիտուտը, որն ի դեպ, գտնվում է Լենինգրադում, պատկերավոր կերպով կոչել են բուսական ռեսուրսների էրմիտաժ։ ՍՍՀՄ բոլոր սելեկցիոն կենտրոնները պահանջի դեպքում մատակարարվում են ամեն տվյալ կուլտուրայի համաշխարհային բազմազանության ցանկացած քանակի սորտանմուշներով։ Նշենք, օրինակ, որ այդ ինստիտուտում պահպանվում են աշխարհի բոլոր երկրներից ներմուծված ցորենի շուրջ 50 հազար, գարու՝ 17 հազար, եգիպտացորենի՝ 14 հազար և այլ սորտանմուշներ։ Այսպիսով, ամեն մի սելեկցիոներ գործնականում ի վիճակի է որպես ելանյութ օգտագործել տվյալ կուլտուրայի համաշխարհային բազմազանությունը։ Այս տեսակետից չափազանց կարևոր է նաև այն, որ ամեն մի կոնկրետ ելանյութ կարող է ուսումնասիրվել այդ բազմազանության ֆոնի վրա։ Դա կարևոր, ինտեգրացնող գործոն է։ Այդ հանգամանքի շնորհիվ յուրաքանչյուր սելեկցիոն հիմնարկություն հանդես է գալիս որպես Միության ընդհանրական սելեկցիայի մի օղակ։

Հայտնի է, որ սելեկցիայի հաջողությունները մեծապես պայմանավորված են կատարվող աշխատանքների ծավալով, առաջին հերթին ուսումնասիրվող ու սելեկցիոն պրոցեսների մեջ ներգրավվող ձևերի ու սորտանմուշների քանակով։ Որքան մեծ է գենետիկորեն բազմազան ելանյութի ծավալը, այնքան բարձր է տվյալ հատկանիշների կոմպլեքսով օժտված տեսակների երևան գալու, դրանց ընտրության հավանականությունը։ Այդ առումով ամեն մի սելեկցիոն հիմնարկություն, ի թիվս այլ հանգամանքների, նպաստում է տվյալ կուլտուրայի գծով ուսումնասիրվող ելանյութի ծավալի մեծացմանը։ Ընդ որում այս իմաստով առաջնահերթ նշանակություն ունի հատկապես տվյալ ագրոէկոլոգիական պայմաններում սորտանմուշների ուսումնասիրումը։ Ամեն մի կոնկրետ գենոտիպի պոտենցիալ հնարավորությունները առավել լիակատարությամբ դրսևորվում են որոշակի արտաքին պայմաններում։

Սելեկցիոն ծրագրերում կարևոր է կատարված աշխատանքների ու ծախսերի փոխհատուցման հարցը կամ կատարվող հետազոտությունների տնտեսական շահավետությունը։ Եթե գիտության այլ բնագավառներում այդ հարցը դժվար է խիստ որոշակիությամբ դնել ու ճշգրիտ հաշվարկել, ապա սելեկցիոն ծրագրերի առումով այն համեմատաբար հեշտ իրագործելի է։ Ինչպես արդեն նշվել է, որոշակի առումով սելեկցիան ժամանակակից բուսաբուծական արտադրության մի անհրաժեշտ օղակն է և շատ ընդհանուր գծեր ունի անմիջական նյութական արտադրության հետ։ Սելեկցիայի համար կատարված հատկացումները շատ արագ կերպով հատուցվում են նաև այն դեպքերում, երբ բուծված սորտերը մշակվում են համեմատաբար սահմանափակ տարածությունների վրա։ Այդ առումով մեր հանրապետությունում տարբեր կուլտուրաների գրանցված համեմատաբար փոքր ցանքատարածությունները չպետք է դիտել որպես սելեկցիայի զարգացումը և ընդարձակումը չարդարացնող իրողություն։



Ժամանակակից սելեկցիայի հնարավորությունները շատ բարձր են, դրանք գոյանում են հիմնականում երկու խումբ բաղադրիչներից՝՝ գենետիկայի և սելեկցիայի գիտական ու մեթոդական նվաճումներից և սելեկցիոն աշխատանքների նյութատեխնիկական զինվածությունից։

Վերջին տասնամյակներում աստիճանաբար սելեկցիոն պրակտիկա մուտք գործեցին գենետիկական ճշգրիտ գիտելիքների վրա խարսխվող մեթոդներ։ Օբյեկտիվորեն ու ողջամտորեն գնահատվեցին սելեկցիայի հնարավորությունները և նորագույն գենետիկական մեթոդների կիրառման անհրաժեշտությունը։ Ամեն մի սելեկցիայի հաջողություն, ինչպես նշվեց, հիմնված է ելանյութի գենետիկական բազմազանության վրա։ Այժմ այդպիսի բազմազանություն ստեղծելու նպատակով հին դասական մեթոդների հետ շահեկանորեն զուգակցվում են նաև նորագույն մեթոդներ։ Այսպես, օրինակ, տարբեր կուլտուրաների, այդ թվում նաև հացահատիկների սելեկցիայում, լայնորեն կիրառվում է ռադիացիոն և քիմիական մուտագենեզը։ Այն հաջողությամբ զուգորդվում է խաչասերումների դասական մեթոդների հետ։ Մեզանում աշնանացան գարու արդեն շրջանացված «Արարատի—7» և պետական սորտափորձարկման պրոցեսում գտնվող «Արարատի—4» ու «Արարատի—8» սորտերը ստեղծվել են քիմիական մուտագենեզի մեթոդով։ Ի դեպ, նշենք, որ «Արարատի—7-ը» արհեստական մուտագենեզի օգնությամբ ստեղծված առաջին արտադրական սորտն է մեր հանրապետությունում։ Սելեկցիոն ուսումնասիրությունների տարբեր փուլերում են գտնվում աշնանացան ցորենի ու գարու բազմաթիվ մուտանտներ։

Այնուամենայնիվ, եթե մեր սելեկցիայի զինանոցը գիտամեթոդական առումով բավարարում է այսօր, ապա մի քանի տարի հետո կարող է միանգամայն անբավարար լինել։ Հայտնի է, որ ամբողջ աշխարհում, այդ թվում նաև մեր երկրի շատ գիտահետազոտական հաստատություններում ինտենսիվ հետազոտություններ են տարվում հյուսվածքային ու բջջային կուլտուրաները, սոմատիկ կամ մարմնական հիբրիդացումը, գենային ինժեներիան և այլ նորագույն մեթոդներ բույսերի սելեկցիայում կիրառելու նպատակով։ Այդ մեթոդները կիրառելու համար անհրաժեշտ է նման հետազոտություններ ծավալել նաև մեր հանրապետությունում, պատրաստել համապատասխան որակավորման կադրեր։ Ինչպես այլ պարագաներում, այստեղ ևս բաց թողածը լրացնելը հետագայում ավելի դժվար կլինի։ Ամեն ինչ լավ է, երբ ժամանակին համընթաց է կատարվում։ Եվ միանգամայն օրինաչափ է, որ պարենային ծրագրում ընդգծված է բույսերի, միկրոօրգանիզմների և կենդանիների սելեկցիայում գենային ինժեներիայի մեթոդների ուղղությամբ տեսական հետազոտությունների ընդարձակման ու զուգորդման անհրաժեշտությունը։

Ծրագրավորված չափանիշներ ունեցող ձևերի, ապագա սորտերի նախահայրերի հնարավոր առկայության ու ընտրության միակ հուսալի երաշխիքն են ուսումնասիրվող ձևերի գենետիկական բազմազանությունը և մեծաքանակ լինելը։ Այդ քանակը ներկայիս գենետիկական ծրագրերում տասնյակ հազարների է հասնում։ Հասկանալի է, որ այդպիսի ծավալի շահեկան ու արդյունավետ ընդգրկումը, սելեկցիոն յուրացումը անհնար է առանց ժամանակակից տեխնիկական հնարավորությունների օգտագործման։ Այդ առումով չափազանց կարևոր է սելեկցիոն աշխատանքների նյութատեխնիկական ապահովվածությունը։ Մինչդեռ մեզանում սելեկցիոն հետազոտությունների նման ապահովումը հեռու է բավարար լինելուց, հատկապես հացահատիկային կուլտուրաների սելեկցիայի բնագավառում։ Եթե Միության սելեկցիոն հաստատությունների մեծ մասում սելեկցիոն հիմնական պրոցեսները մեքենայացված և հաճախ նաև ավտոմատացված են, ապա մեզանում գերակշռողը ձեռքի աշխատանքն է ու այդ էլ սպասարկող անձնակազմի խիստ անբավարարության պայմաններում։ Ներկայումս սելեկցիոն արդյունավետ աշխատանքն ու հետազոտությունը պարզապես դժվար է պատկերացնել առանց փոքրածավալ տեխնիկական միջոցների, կլիմայական ու սառնարանային խցիկների, ջերմատների ու վեգետացիոն այլ հարմարանքների։ Մինչդեռ նման հնարավորությունները մեզանում շատ աղքատիկ են կամ իսպառ բացակայում են։ Հետևաբար, մեր

նությունը, նրանց դաստիարակել սոցիալիստական ամուր կարգապահության ոգով:

Զեկուցողի ելակետն այն իրողությունն էր, որ սկզբնական կուսկազմակերպությունը արտադրական կոլեկտիվի քաղաքական միջուկն է և պատասխանատվություն է զգում կուսակցության առջև կոլեկտիվի գործունեության բոլոր բնագավառների վիճակի, նրանում բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ հաստատելու համար: Զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանում սկզբնական կուսկազմակերպությունները, արտադրամասային կազմակերպությունների ու կուսխմբերի հետ միասին, վճռական դեր են կատարում մասսաների քաղաքական դաստիարակության, կոլեկտիվների առջև ծառացած տնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծման, կուսակցության քաղաքականության անշեղ իրականացման գործում: Կուսակցության շրջկոմը մշտապես հոգում է, որպեսզի ամեն մի կուսկազմակերպություն լինի մարտունակ, ամեն մի կոմունիստ՝ ակտիվ ու նախաձեռնող, ամենայն պատասխանատվությամբ կատարի հանձնարարած գործը, արժանի ձևով կրի լենինյան կուսակցության անդամի վեհ կոչումը: Զեկուցողն այդ խնդիրները պարզաբանում է շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների կոնկրետ օրինակներով: Մասնավորապես արծարծվեց Այրումի պահածոների գործարանի կուսկազմակերպության փորձը, որը քննարկվել է կուսշրջկոմի բյուրոյում և արժանացել նրա հավանությանը: Գործարանի կոմունիստներից յուրաքանչյուրը տարվա ընթացքում կուսկազմակերպությանը հաշիվ է տալիս իր գործունեության մասին: Հաշվետվության ընթացքում հատկապես ուշադրություն է հրավիրվում այն հանգամանքի վրա, թե կոմունիստն ինչպիսի աշխատանքային ակտիվություն է ցուցաբերում, ինչպես է զբաղվում իր՛ գաղափարական մակարդակի բարձրացմամբ, ինչպես է իրեն դրսևորում հասարակական վայրում, ընտանիքում, ինչպես է դաստիարակում երեխաներին և ինչպիսի կապ է հաստատել դպրոցի հետ:

Զեկուցողը կոնկրետ փաստերով հիմնավորում է, թե սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակության ուժեղացման գործում ինչպիսի վճռական դեր են խաղում նրանց շարքերի որակական կազմի բարելավումը, կոմունիստներին տրվող հանձնարարությունները, կուսակցական ժողովների պատշաճ նախապատրաստումը ու բարձր մակարդակով անցկացումը, ընդունած որոշումների կատարման և ստուգման ճիշտ կազմակերպումը, կոմունիստների աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացումը, նրանց գաղափարական կոփումը և ուրիշ այլ գործոններ: Ընթացիկ հնգամյակի անցած տարիներին շրջանում ՍՄԿԿ շարքերն ընդունվածների 73,5 տոկոսը բանվորներ են, 81 տոկոսը՝ մինչև 30 տարեկան երիտասարդներ, 38,5 տոկոսը՝ կանայք: Կուսակցության շարքերը նոր ընդունվածների գաղափարական կոփման, արտադրական ու հասարակական ակտիվության բարձրացման լավ միջոց է երիտասարդ կոմունիստների դպրոցը: Սկզբնական կուսկազմակերպությունների բարձր մարտունակության իսկական չափանիշ է արտադրության կուսակցական ղեկավարման, կոլեկտիվների արտադրական ու հասարակական գործունեության աշխուժացման համար նրանց ծավալած ակտիվ ու բազմաբնույթ աշխատանքը:

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ ծնունդ է առել սովետական իշխանության հաստատման առաջին իսկ տարիներին և դարձել էկոնոմիկայի վերելքի հզոր շարժիչ ուժ: Վ. Ի. Լենինը սոցիալիստական մրցությունը համարում էր նոր հասարակարգի յուրահատուկ օրինաչափություն, երկրի տնտեսական վերակառուցման և աշխատավորական զանգվածների դաստիարակության, արտադրության կառավարմանը նրանց մասնակից դարձնելու գործուն միջոց: «Ինչպես կազմակերպել մրցությունը» հոդվածում առաջնորդը նշում էր, որ սոցիալիզմը ոչ միայն չի մարում մրցությունը, այլև, ընդհակառակը, առաջինն է հնարավորություն ստեղծում լայնորեն կիրառել այն, աշխատավորների մեծամասնությունը ներգրավել այնպիսի աշխատանքի մեջ, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ: Եվ կոմունիստական կուսակցությունը մեր հասարակարգի զարգացման բոլոր փուլերում, ղեկավարվելով սոցիալիստական մրցության կազմակերպման վերաբերյալ լենինյան դրույթներով, կարևորել է այն, հետևողականորեն կիրառել մրցության հրապարակայնության, համեմատելիության, փորձի գործնական կրկնության, մրցողների նյութական ու բարոյական խրախուսման լենինյան սկզբունքները: ՍՄԿԿ XXVI համագումարը սոցիալիստական մրցությունը համարեց մասսաների ստեղծագործություն և նշեց, որ իր բուն էությամբ այն հիմնված է մարդկանց բարձր գիտակցականության ու նախաձեռնության վրա, և հենց այդ նախաձեռնությունն է օգնում բացահայտելու և գործողության մեջ դնելու արտադրության ռեզերվները, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունն ու որակը:



Լենինյան դրույթների և կուսակցության որոշումների լույսի ներքո սոցիալիստական մրցության կազմակերպման խնդիրներն արծարծեց իր զեկուցման մեջ «Լենինյան ուղիով» ամսագրի «Կուսակցական կյանք» բաժնի վարիչ Ա. Սաքանյանը: Զեկուցողը ձեռնարկություններում և տնտեսություններում կատարած ուսումնասիրությունների հիման վրա ցույց տվեց, թե ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն ինչպես են կիրառում սոցիալիստական մրցության կազմակերպման լենինյան սկզբունքները, ինչպես են զբաղվում մրցության ծավալման հարցերով ու ղեկավարում այն: Կուսշրջկոմի գործուն ղեկավարության շնորհիվ շրջանային մասշտաբով կիրառվում են մրցության զանազան ձևեր, այն կազմակերպվում է ըստ արտադրության ճյուղերի, արդյունքները ժամանակին քննարկվում ու հրապարակվում են շրջանային «Ծիածան» թերթում, պարգևները հաղթողներին են հանձնվում հանդիսավոր պայմաններում, ցուցադրական բազմազան միջոցներով լուսաբանվում են մրցության հարցերը: Ամենուրեք պատշաճ կերպով կարևորվում է մրցության հաղթողների նյութական ու բարոյական խրախուսման գործը: Այրումի պահածոների գործարանում, Ջեյթունի պետական տնտեսությունում, Նոյեմբերյանի անտառտնտեսությունում հարգի է նաև մրցության բարձրագույն ձևը՝ կոմունիստական աշխատանքի շարժումը: Կոմունիստական բարձր կոչման համար են պայքարում զգալի թվով փոքր ու մեծ կոլեկտիվներ և անհատներ: Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դրսևորման ցայտուն օրինակ է ամեն տարի խոտհնձի ժամանակ կազմակերպվող ընտանեկան շաբաթօրյակ-մրցությունը, որն արժանացել է միութենական մամուլի, ռադիոյի ու հեռուստատեսության ուշադրությանը: Սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպման շնորհիվ Նոյեմբերյանի անտառտնտեսության, Ջեյթունի սովխոզի և այլ կոլեկտիվներ քանիցս արժանացել են հանրապետական ու միութենական մրցանակների:

Զեկուցողը միաժամանակ գիտագործնական կոնֆերանսի մասնակիցների ուշադրությունը հրավիրեց սոցիալիստական մրցության կազմակերպման գործում տեղ գտած թերությունների ու թերացումների վերացման վրա: Ոսկևանի, Կողբի, Ծավարշավանի պետական տնտեսություններում ծավալված մրցության մեջ նկատվում են ձևականության ու անտարբերության դրսևորումներ. արտադրական ստորաբաժանումները մինչև օրս չունեն մրցության պայմանագրեր: Նշված և Բաղանիսի տնտեսությունների սոցիալիստական պարտավորություններում անտեսվել են սոցիալական զարգացման, աշխատանքի արտադրողականության ու խնայողության խնդիրները, շատ կետերով պարտավորությունները չեն գերազանցում պլանային առաջադրանքները: Բերդավանում չնայած որ ցուցադրական միջոցները բավարար են, սակայն պետական տնտեսության սոցպարտավորությունների ցուցափեղկում տակավին 1983 թվականի բնագծերն են ներկայացված:

«Սովետական մարդու բարոյական կերպարը» թեմայով ուշագրավ զեկուցմամբ հանդես եկավ «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագրի տեղակալ Ա. Սիմոնյանը: Զեկուցման մեջ ցույց տրվեց սովետական մարդու համակողմանի դաստիարակության վերաբերյալ ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտկոմի հետհամագումարյան պլենումների պահանջների ոգուց բխող խնդիրները:

Մասնավորապես նշվեց, որ սովետական մարդը նոր հասարակության քաղաքացին է, որն իր գործելակերպով ու ապրելակերպով արմատապես տարբերվում է մարդկության նախընթաց զարգացման բոլոր հասարակարգերի անհատներից: Ճիշտ է, մեր մարդը դեռ լրիվ չի ազատագրվել հին աշխարհի մնացուկներից, տակավին մեզանում պատահում են եսասիրական հոգեբանության կրողներ, այնուհանդերձ, սովետական ապրելակերպը ձևավորել է իր նոր անդամին, որն օժտված է կոմունիստական բարոյականության վեհ հատկանիշներով: Հեռու չգնանք, դիմենք Նոյեմբերյանի շրջանի աշխատավորներին, որոնց արտադրական սխրանքներն ու մարդկայնության դրսևորումները արժանի են ամենաբարձր խրախուսանքի: Եվ դա նրանք ձեռք են բերել հայրենանվեր գործերով: Նրանց համար կյանքի նորմ է դարձել նվիրվածությունը հարազատ կուսակցության գործին, անձնվեր աշխատանքը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում:

Այո՛, աշխատանքով է մարդը գեղեցիկ, աշխատանքն է մարդուն մարդկայնացնում, նրա մեջ արթնացնում վեհ զգացումներ: Նոյեմբերյանի շրջանում, որն ունի հեղափոխական ու աշխատանքային հարուստ ավանդույթներ, ապրում ու գործում են կուսակցության վետերաններ, որոնք մեծ ու պատասխանատու անելիքներ ունեն աճող սերնդի դաստիարակության գործում:

Կոմունիստական դաստիարակության կարևոր բնագավառներից են կենցաղը, կենցաղավարությունը, որոնք մեզնից պահանջում են ապրելակերպի որակական վերափոխում մեր բարոյականության սկզբունքների ոգով:

Վերջապես անհրաժեշտ է ավելի սերտ ու ներդաշնակ կապեր հաստատել արվեստի, գեղարվեստական ինքնագործունեության հետ: Կարծեմ կարևոր է նաև մշտապես հիշել, որ դաստիարակության հզոր կռվաններից են ինքնադաստիարակությունը և ֆիզիկական կուլտուրան ու սպորտը:

Զեկուցողը կոնֆերանսի մասնակիցների ուշադրությունը հրավիրեց սովետական մարդու բարոյական դաստիարակության նաև այլ խնդիրների վրա, որոնց հետևողական լուծմամբ հարստանում է նրա հոգեկան աշխարհը, ձևավորվում հասարակական-քաղաքական դիրքորոշումը:

ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻՑ ՀԵՏՈ տեղի ունեցավ մտքերի աշխույժ փոխանակություն, որը յուրահատուկ ու հետաքրքրական էր այն առումով, որ ամեն մի ելույթ հիմնականում շոշափում էր սկզբնական կուսկազմակերպության գործունեության առանձին բնագավառի առանցքային հարցեր, ցույց տալիս դրանց վճռական դերը կոմունիստների ակտիվության ու պատասխանատվության և կուսկազմակերպության մարտունակության ուժեղացման գործում: Այսպես, Հաղթանակի սովխոզի կուսբյուրոյի քարտուղար Հ. Մուղդուսյանի ելույթը նվիրված էր կուսակցական կարգապահության ամրապնդման հարցին: Նա կարգապահության վերաբերյալ լենինյան դրույթների և կուսակցության արդի պահանջների լույսի ներքո կոնֆերանսի մասնակիցներին ծանոթացրեց իրենց կազմակերպությունում կատարվող աշխատանքի ձևերին ու մեթոդներին: Կարգապահության ամրապնդմանը նպաստում են զանազան գործոններ, որոնցից մեկը կոմունիստների հաշվետվությունների քննարկումն է: Այն դրականորեն է ազդում կուսակցական կարգապահության ամրապնդման, կոմունիստների պատասխանատվության բարձրացման վրա: Կուսակցական ժողովներում ու բյուրոյի նիստերում արտադրական ճյուղերի ղեկավարների հաշվետվությունների գործարար քննարկումը գործերի վիճակի բարելավման փորձված միջոց է: Հաշվի առնելով, որ տարվա ընթացքում հնարավոր չէ ժողովներում ու բյուրոյի նիստերում քննարկել բոլոր կոմունիստների հաշվետվությունը՝ կուսբյուրոն յուրաքանչյուր ամսվա վերջին օրը հայտարարել է հաշվետվության օր. ամեն անգամ 2—3 կոմունիստ հաշիվ է տալիս իր աշխատանքային ու հասարակական գործունեության մասին:

Կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը մեծապես նպաստում է սահմանված ժամկետներում ընդունած որոշումների անշեղ կատարումը: № 8 շարժական մեքենայացված շարասյան կուսկազմակերպության քարտուղար Հ. Գասպարյանը հանգամանորեն խոսեց այդ ասպարեզում իրենց կուտակած փորձի մասին: Նա ասաց, որ ընդունած որոշումների ժամանակին կատարումը կոմունիստների ակտիվության աճի և պատասխանատվության բարձրացման հիմնական միջոցներից է: Ամեն անգամ որոշումներ ընդունելիս՝ կուսակցական ժողովն ու բյուրոն սահմանում են կոնկրետ ժամկետներ, որոշակի անձանց պատասխանատու դարձնում դրանց կատարման համար: Կուսբյուրոյի քարտուղարը հաջորդ ժողովում կամ բյուրոյի նիստում կոմունիստներին հաշիվ է տալիս որոշումների կատարման ընթացքի ու արդյունքների մասին:

Սկզբնական կուսկազմակերպության ստորին օղակները՝ բրիգադային ու արտադրամասային կազմակերպությունները և կուսխմբերը, վճռական դեր են խաղում կուսակցական կազմակերպական ու քաղաքական աշխատանքի բարելավման և աշխուժացման գործում: Նրանք առավել մոտիկ են կանգնած մասսաներին, քաջատեղյակ են կոլեկտիվների գործերին ու հոգսերին և, բնականաբար, զորավիգ են դառնում սկզբնական կուսկազմակերպություններին՝ արտադրության ղեկավարման, սոցիալտնտեսական խնդիրների լուծման և կոմունիստների ու անկուսակցականների դաստիարակության համար նրանց ծավալած ողջ գործունեության ընթացքում: Այդ օղակների փորձի ընդհանրացմանն էին նվիրված Բերդավանի պետական տնտեսության կուսկոմիտեի քարտուղար Հ. Սարգսյանի և Նոյեմբերյանի անտառտնտեսության տնկարանի կուսխմբի կազմակերպիչ Հ. Բաբսեղյանի ելույթները: «Մեր սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունը,— ասաց Հ. Սարգսյանը,— հանդիսանալով աշխատավորական կոլեկտիվի ղեկավար կորիզը, իր ամենօրյա գործունեության ընթացքում միշտ հենվում է արտադրամասային կուսկազմակերպությունների ու կուսխմբերի վրա, նրանց միջոցով ու օգնությամբ լուծում կազմակերպությանը հուզող բոլոր հարցերը»: Ինչպես Հ. Սարգսյանը, այնպես էլ Հ. Բաբսեղյանը ասացին, որ իրենց կուսակցական օղակները պայքարում են աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման համար, զբաղվում սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման, մարդկանց աշխատանքային ու քաղաքական դաստիարակության, կոլեկտիվներում առաջավոր փորձի արմատավորման և այլ հարցերով ու այդ ամենով իսկ նպաստում սկզբնական կուսկազմակերպության և նրա ստորին օղակների մարտունակության ուժեղացմանը:



«Կուսակցությունը ձգտում է հասնել նրան, որ մարդը մեզ մոտ դաստիարակվի ոչ թե որպես պարզապես գիտելիքների որոշակի պաշար կրող, այլ նախ և առաջ որպես սոցիալիստական հասարակության քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող, իրեն բնորոշ գաղափարական հիմնադրույթներով, բարոյականությամբ ու շահերով, աշխատանքի ու վարվելակերպի բարձր կուլտուրայով»: ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումում ընկ. Կ. Ու. Չեռնենկոյի արտահայտած այս խոսքերով սկսեց իր ելույթը Կողբի № 2 դպրոցի կուսկազմակերպության քարտուղար Արևհատ Խաչիկյանը: Այն նվիրված էր սովորողների բարոյական դաստիարակության խնդիրներին: Նա կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի և հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի պահանջների լույսի ներքո ցույց տվեց, թե ինչպես են զբաղվում իրենց դպրոցի կուսկազմակերպությունն ու մանկավարժական կոլեկտիվը աշակերտությանը կոմունիստական բարոյականության վսեմ գաղափարներով դաստիարակելու հարցերով: Դպրոցում իրականացվում են դաստիարակչական զանազան միջոցառումներ: Ամեն շաբաթ կազմակերպվում է քաղաքական ինֆորմացիայի օր, որտեղ սովորողները հաղորդակից են դառնում աշխարհում կատարվող քաղաքական իրադարձություններին, մեր կուսակցության արտաքին ու ներքին քաղաքականության հիմնական պրոբլեմներին: Անցկացվել է խաղաղության պաշտպանությանը նվիրված միտինգ, «Մենք քվեարկում ենք խաղաղության օգտին» ռուսաց լեզվով ցերեկույթ, գործում է ինտերնացիոնալ բարեկամության ակումբ, սովորողները նամակագրական կապեր են հաստատել եղբայրական հանրապետությունների դպրոցների աշակերտների հետ: Ա. Խաչիկյանը, վկայակոչելով դպրոցական ռեֆորմի այն պահանջը, որ «Դպրոցում աշխատանքային դաստիարակության և ուսուցման նպատակը պետք է լինի աշխատանքի նկատմամբ և աշխատավոր մարդկանց հանդեպ հարգանք դաստիարակելը», կոնֆերանսի մասնակիցներին իրազեկ պահեց իրենց դպրոցում այդ նպատակով կատարվող աշխատանքին: Դպրոցի ուսումնական արհեստանոցը, դպրոցամերձ հողամասը, տնարարության կաբինետը, աշխատանքի վետերանների հետ հանդիպումները, «Փառք աշխատանքին» հանդիսության անցկացումը, ամռանը դաշտային աշխատանքներին բարձրդասարանցիների ակտիվ մասնակցությունը այն միջոցներն են, որոնցով սովորողներին սեր ու հարգանք են ներարկվում աշխատանքի ու աշխատավոր մարդու նկատմամբ:

Սովետական մարդու բարոյական կերպարի խնդիրների շուրջ հետաքրքրական ելույթ ունեցավ Կողբի պետական տնտեսության կուսբյուրոյի քարտուղար Ա. Եգանյանը: Կուսկազմակերպությունը խնդիր է դրել կանխել ու արմատախիլ անել քաղքենիական, սպառողական հոգեբանության դրսևորումները: Այդ նպատակով կուսբյուրոն լայնորեն օգտագործում է արտադրության վետերանների ու առաջավորների, վարպետ-դաստիարակների օրինակի ուժը, անհանդուրժողականության մթնոլորտ ստեղծում սոցիալիստական օրինականության և բարոյականության նորմերից կատարվող ամեն մի շեղման նկատմամբ, մարդկանց դաստիարակում բարձր պատասխանատվության ու պահանջկոտության ոգով:

ԸՆԴՀԱՆՈՒՐ ՆԻՍՏԻՑ ՀԵՏՈ տեղի ունեցան սեկցիոն պարապմունքներ, որտեղ նույնպես լսվեցին կուսակցական աշխատանքի տարբեր բնագավառներին վերաբերող զեկուցումներ և տեղի ունեցավ մտքերի գործարար փոխանակություն:

Գյուղատնտեսության, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, կապի և սպասարկման ոլորտի սկզբնական, բրիգադային և արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարների սեկցիոն պարապմունքում ՀԿԿ Նոյեմբերյանի շրջկոմի երկրորդ քարտուղար Ռ. Մամյանը հանդես եկավ «Արտադրական ստորաբաժանումների կոլեկտիվների գործունեության նկատմամբ սկզբնական կուսկազմակերպությունների ազդեցության ուժեղացման ուղիներն ու եղանակները» թեմայով զեկուցմամբ: Կուսակցությունը, ասաց նա, ներգործում է մարդկանց վրա իր ճշմարիտ, մարդասիրական քաղաքականությամբ: Սովետական մարդը հավատում է կուսակցությանը, նրա ծրագրերը համարում իր ծրագիրը:

Շրջանի կուսկազմակերպությունները կոլեկտիվների գործունեության նկատմամբ իրենց ազդեցությունն ուժեղացնում են սոցիալիստական մրցության ճիշտ կազմակերպման, աշխատողների նյութական շահագրգռության բարձրացման, նրանց խրախուսման գործի բարելավման, պլանների ու սոցպարտավորությունների ընդունմանը նրանց մասնակցության ապահովման, ներքևից եկող քննադատական դիտողությունների և առաջարկությունների ժամանակին ընթացք տալու, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, ժողվերահսկողության խմբերի և «Կոմերիտական լուսարձակ» շտաբների գործունեության

ցույց տվեց, որ այն բրիգադներում, որտեղ կուսխմբերը գործում են ակտիվորեն, արդյունքները միշտ էլ լինում են գոհացուցիչ, կոմունիստները՝ նախաձեռնող ու հաշվենկատ: Այսպես, Հաղթանակի պետտնտեսության մեքենատրակտորային հավաքակայանի կուսխմբի կոմունիստներն իրենց ուժերով ստեղծել են պարարտանյութը հող մտցնող մեքենա, որի միջոցով պարարտացվել են խաղողի այգիները դրանց փխրեցման ընթացքում: Կուսխումբն ստանձնեց գյուղատնտեսական տեխնիկայի ձմռան նորոգման գործը և այն ավարտեց սեղմ ժամկետներում: Կուսխումբը կամովին վերահսկողություն է սահմանել վառելանյութերի և քսանյութերի արդյունավետ օգտագործման վրա:

Ծավարշավանի պետտնտեսության կուսբյուրոյի քարտուղար Լ. Պետրոսյանը, կուսշրջկոմի հրահանգիչ Վեներա Գյուլնազարյանը, կուսխմբերի կազմակերպիչներ Ա. Ազատյանն ու Ս. Գիշյանը ևս ունկնդիրներին ծանոթացրին կուսխմբերի աշխատանքի ուսանելի փորձին:

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆՆ ԱՆՉԱՓ կարևորում է ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ կուսակցական վերահսկողության անհրաժեշտությունը: ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներով և որոշումների հիման վրա պետական տնտեսություններում, արդյունաբերական, տրանսպորտային և կապի ձեռնարկություններում, արտադրական բնույթի հիմնարկություններում ստեղծվել են ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող զանազան հանձնաժողովներ:

Եվ ահա կուսակցության պահանջների ոգով էլ վերահսկողություն իրականացնող հանձնաժողովների նախագահների սեկցիոն պարապմունքում պարզաբանվեցին ադմինիստրացիայի գործունեության կուսակցական վերահսկման խնդիրները և ընդհանրացվեց այդ ասպարեզի ուսանելի փորձը: Այստեղ հանձնաժողովների գործունեության տարբեր բնագավառների վերաբերյալ զեկուցումներ կարդացին ժողովրդական վերահսկողության շրջկոմի նախագահի տեղակալ Ս. Բարսեղյանը, Նոյեմբերյանի պետտնտեսության կուսբյուրոյի քարտուղարի տեղակալ Ս. Մամյանը, կուսշրջկոմի քաղլուսկաբինետի վարիչ Ծ. Եղիգարյանը: Մտքերի փոխանակությանը մասնակցեցին վերահսկողություն իրականացնող հանձնաժողովների նախագահներ Ծ. Միրզոյանը (Այրումի պահածոների գործարան), Ա. Մուսայելյանը (Արճիս), Ռ. Դուրինյանը (Դովեղ), Ս. Ղարագյոզյանը (Զեյթուն) և Ս. Անանյանը (Ջուջեվան): Զեկուցողներն ու ելույթ ունեցողները արծարծեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և որակի բարելավման, հողային ֆոնդի, աշխատանքային, նյութական ու ֆինանսական, վառելիքաէներգետիկ ռեսուրսների ռացիոնալ ու ճիշտ օգտագործման համար սկզբնական կուսկազմակերպությունների և նրանց առընթեր ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովների ծավալած պայքարի, ժողվերահսկողության խմբերի, պոստերի և «Կոմերիտական լուսարձակ» շտաբների հետ այդ հանձնաժողովների համագործակցության հարցերը: Նրանք պարապմունքի մասնակիցներին հաղորդակից դարձրին այդ ասպարեզներում կուտակված ուսանելի փորձին: Այսպես, Այրումի պահածոների գործարանի կուսկազմակերպության՝ որակի գծով ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովի նախագահ Ծ. Միրզոյանը պատմեց, որ հանձնաժողովի ուսումնասիրությունից պարզվեց, որ խախտվում է հումքի վերամշակման հերթականությունը, որի պատճառով դրա մի մասը որակազրկվում է: Հանձնաժողովը քննարկեց այդ հարցը և արդյունքների մասին հայտնեց գործարանի դիրեկցիային ու կուսբյուրոյին, որոնք գործնական միջոցներ ձեռնարկեցին բացահայտված այդ և մյուս թերությունները վերացնելու համար: Հանձնաժողովի նախաձեռնությամբ արտադրամասերում սահմանվել են սանիտարական օրեր, պատրաստվել են փակ բունկերներ արտադրական թափոնների և ապակու ջարդի համար, կարգավորվել են բանվորական աշխատատեղերը, արմատավորվել է առանց արկղերի հումքի պահպանման՝ Մոլդավիայում ծնունդ առած մեթոդը և այլն:

Ընդհանուր առմամբ գիտագործնական կոնֆերանսում լսվեցին 16 զեկուցումներ, որոնց շուրջ տեղի ունեցած մտքերի փոխանակությանը մասնակցեց 28 մարդ: Ինչպես ընդհանուր նիստը, այնպես էլ սեկցիոն պարապմունքներն անցան բարձր մակարդակով և, անտարակույս, վճռական դեր կխաղան շրջանում կուսակցական աշխատանքի ոճն ու մեթոդները կատարելագործելու, սկզբնական կուսկազմակերպությունների ու նրանց ստորին օղակների մարտունակությունը բարձրացնելու, կոլեկտիվների արտադրական ու հասարակական կյանքի բոլոր ոլորտների նկատմամբ կուսակցական ազդեցությունն ուժեղացնելու գործում:

# ՈՒՍՈՒՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

**Մանուշակ ԲԱԴԱԼՅԱՆ**
*ՀԿԿ Թալինի շրջկոմի քարտուղար*

*ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻՆ, ԲՈԼՈՐ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻՆ մարքս-լենինյան գաղափարներով, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության պատմական փորձով, կուսակցության քաղաքականության նպատակների ու խնդիրների հստակ ըմբռնմամբ զինելը մշտապես գտնվում է կուսակցության ուշադրության կենտրոնում: Այս կարևոր խնդրի լուծման գործում առաջատար դերը պատկանում է աշխատավորների մարքս-լենինյան կրթությանը: ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումը նշեց, որ կուսակցական ուսուցման համակարգը կոմունիստների մեջ տեսությանը տիրապետելու պահանջի, դրա նկատմամբ հետաքրքրության ու ճաշակի դաստիարակման իր դերը այնքան ավելի լավ կկատարի, որքան ավելի համարձակորեն ազատվենք ձևականությունից, տիրացուականությունից և քարացածությունից, իրենց դարն ապրած ուսման սակավարդյունավետ ձևերից, որքան ավելի ճիշտ հաշվի առնենք կոմունիստների յուրաքանչյուր կատեգորիայի առանձնահատկությունները: Դա, ինչ խոսք, բխում է քաղուսուցման բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ XXVI համագումարի պահանջներից: Հայտնի է, որ համագումարը կուսակցական լուսավորության մեջ գլխավոր հարցը համարեց դրա արդյունավետությունը, խնդիր դրեց կուսակցական քաղաքականությունը միահյուսել մասսաների գործունեության հետ, այլ խոսքով՝ ապահովել կուսակցական գաղափարատեսական, քաղաքական-դաստիարակչական, կազմակերպչական և տնտեսական աշխատանքի միասնությունը (տե՛ս* ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, *էջ 126):*

*Կուսակցության առաջադրած այս խնդիրների իրականացման ասպարեզում քիչ բան չի արվել: Այսօր մարքսիզմ-լենինիզմի մասսայական ուսումնասիրությունը դարձել է մեր ապրելակերպի բնորոշ հատկանիշը:*

*Արժեքավորելով սովետական մարդկանց մեջ կոմունիստական աշխարհայացքի ձևավորման աշխատանքի բացառիկ կարևորությունը՝ ՍՄԿԿ Կենտկոմը XXVI համագումարից հետո մշակեց մարքս-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության կազմակերպման հետագա բարելավման, պրոպագանդայի բոլոր միջոցների և օղակների գործունեության արդյունավետության բարձրացման միջոցառումներ:*

*Ինչպես նշվեց Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում «Քաղաքական ուսուցման իմաստն այն է, որ ամեն ոք կարողանա ստացած գիտելիքները կիրառել պրակտիկայում, պարզ պատկերացնի և գործնականորեն կատարի իր հասարակական պարտքը»: Առաջնորդվելով պլենումի այս դրույթով, շրջանի կուսկազմակերպություններն ամեն կերպ ջանում են, որպեսզի կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության դպրոցներում ու խմբակներում պարապմունքներն անցնեն ունկնդիրների ակտիվ մասնակցության պայմաններում, գործարար մթնոլորտում: Շրջանի շատ կուսկազմակերպություններում քաղաքական ուսուցումը կազմակերպվում է հարցազրույցների, հարցերի կոլեկտիվ քննարկման մեթոդներով: Պրոպագանդիստների եռանդուն ջանքերի շնորհիվ ունկնդիրները ձեռք են բերել սկզբնաղբյուրներից օգտվելու, հանձ-*

նարարված նյութը կոնսպեկտավորելու և գործնական աշխատանքներ կատա-
րելու հմտություններ։ Տնտեսագիտական դպրոցներում լուրջ ուշադրություն է
նվիրվում նաև տնտեսագիտական վերլուծությունների, տնտեսական հաշվարկ-
ների կատարմանը։

Կուսշրջկոմի գաղափարական հանձնաժողովը, քաղլուսկաբինետի մեթոդ-
խորհուրդները, պրոպագանդիստների մշտական գործող առարկայական սեմի-
նարները զգալի աշխատանք են կատարել ուսուցման բովանդակության հա-
րստացման, պրոպագանդիստների պրոֆեսիոնալ վարպետության բարձրաց-
ման, նոր պրոպագանդիստների պատրաստման ասպարեզում։

Ելակետ ունենալով այն հանրահայտ ճշմարտությունը, որ պրոպագան-
դիստը գլխավոր դեմքն է կուսակցական ուսուցման համակարգում, մենք ան-
չափ կարևորում ենք նրանց ընտրության ու դաստիարակության գործը և նա-
խորդ տարիների համեմատությամբ էապես բարելավել ենք պրոպագանդիստ-
ների որակական կազմը։ Նրանց ճնշող մեծամասնությունն ունի պրոպագան-
դիստական աշխատանքի հարուստ փորձ և համապատասխան մասնագիտա-
կան բարձրագույն կրթություն։ Ուսուցման ակտիվ ձևերին տիրապետելու, ու-
սանելի փորձը տարածելու նպատակով պրոպագանդիստների համար պարբե-
րաբար կազմակերպում ենք սեմինար-խորհրդակցություններ, գիտագործնա-
կան և գիտատեսական կոնֆերանսներ, դասախոսությունների և զեկուցում-
ների ցիկլեր։ Լավ արդյունք են տալիս շրջանի կուսակցական, սովետական,
տնտեսական ղեկավարների հետ պրոպագանդիստների հանդիպումները, որոնց
ընթացքում նրանք օպերատիվ ինֆորմացիա են ստանում կուսակցության ներ-
քին ու արտաքին քաղաքականության հրատապ հարցերի, շրջանի սոցիալ-
տնտեսական և կուլտուրական զարգացման հեռանկարների, տեղական մար-
մինների գործունեության վերաբերյալ։

Ուսուցման նկատմամբ օպերատիվ վերահսկողություն իրականացնելու,
պրոպագանդիստական աշխատանքի առաջավոր փորձը տարածելու լավ միջոց
են շրջանային մեթոդխորհուրդների կողմից պարապմունքների մասսայական
ունկնդրումները։ Դրանց արդյունքները քննարկում ենք կուսշրջկոմի բյուրո-
յում, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում, մեթոդխորհուրդների նիստե-
րում և համապատասխան հանձնարարականներ տալիս կուսկազմակերպու-
թյունների քարտուղարներին ու պրոպագանդիստներին։

Կոմունիստների քաղաքական ուսուցման և աշխատավորների տնտեսագի-
տական կրթության բարելավման, դրանց արդյունավետության բարձրացման
ասպարեզում հետևողական աշխատանքով աչքի է ընկնում Մաստարայի ըն-
կըղբնական կուսկազմակերպության բյուրոն (քարտուղար՝ Ս. Մինասյան)։
Պարբերաբար կազմակերպվող ուսումնասիրությունների, պարապմունքների
ունկնդրումների, քննարկումների միջոցով բյուրոն պարզում է այդ գործում
եղած թերությունների և վրիպումների պատճառները, ընդհանրացնում ու ար-
մատավորում լավը և ուսանելին, գործուն օգնություն ցույց տալիս պրոպագան-
դիստներին։ Այստեղ գործում են գիտական կոմունիզմի հիմունքները, ՍՍՀՄ
ներքին ու արտաքին քաղաքականության հարցերն ուսումնասիրող կուսակցա-
կան, մեկ կոմերիտական քաղխմբակ, «ՍՍՀՄ պարենային ծրագիրը», «Բրիգա-
դային կապալը» (երկուական) և «Գիտատեխնիկական առաջընթացն ու էկո-
նոմիկան» դասընթացներն ուսումնասիրող տնտեսագիտական դպրոցներ, որոնց
պրոպագանդիստներն են տնտեսության ղեկավարներն ու մասնագետները։ Ընդ-
որում դրանք կոմպլեկտավորելիս խստորեն հաշվի է առնվել ունկնդիրների
կրթական և քաղաքական պատրաստականության մակարդակը։ Ողջ ուսումնա-
կան տարվա ընթացքում կուսբյուրոն հետամուտ է եղել, որպեսզի պարապ-
մունքները տեղի ունենան սահմանված օրերին ու ժամերին և քաղաքական-
գաղափարական բարձր մակարդակով։ Անցած տարվա դեկտեմբերի վերջին
կուսբյուրոն անդրադարձավ քաղուսուցման և տնտեսագիտական կրթության
վիճակի հարցին։ Նշելով հանդերձ, որ պարապմունքները նպաստել են տըն-
տեսության առջև ծառացած խնդիրների հաջող լուծմանը, կուսբյուրոն մի շարք
թերություններ բացահայտեց քաղխմբակների և տնտեսագիտական դպրոցների



աշխատանքում։ Մասնավորապես խնդիր դրվեց պրոպագանդիստների առջև՝
թեմաներն ուսումնասիրելիս լայնորեն օգտագործել ցուցադրական միջոցներ և
տնտեսության էկոնոմիկայի ու գյուղի սոցիալական զարգացմանը վերաբերող
նյութերը, դրանց շուրջ կազմակերպել զրույցներ և դասախոսություններ։

Կոմունիստների քաղաքական ուսուցումը նորանոր պահանջներ է առաջա-
դրում կուսկազմակերպություններին։ Տարեցտարի բարձրանում է ունկնդիր-
ների հանրակրթական և քաղաքական մակարդակը, և դա, բնականաբար,
պրոպագանդիստից պահանջում է մշտապես գտնվել արդի խնդիրների բարձ-
րության վրա, հետևողականորեն հարստացնել տեսական գիտելիքները, կա-
տարելագործել մեթոդական վարպետությունը։

Այնտեղ, որտեղ կուսկազմակերպությունները մշտապես զբաղվում են
պրոպագանդիստների վարպետության բարձրացմամբ, կուսակցական ուսու-
ցումը լինում է արդյունավետ, պարապմունքներն անցնում են գործնական
մթնոլորտում, ունկնդիրների քաղաքական ակտիվության պայմաններում։

Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքի ձևերը բազմազան են։
Դրանցից հատկապես արդյունավետ են շրջկոմին առընթեր մշտական գործող
սեմինարները, որոնց հիմնական խնդիրը պրոպագանդիստներին առաջիկա
պարապմունքներին տեսականորեն և մեթոդապես նախապատրաստելն է։ Մեզ
մոտ՝ շրջկոմում, մշտական գործող սեմինարներն անցկացվում են ամիսը մեկ
անգամ (գիտական կոմունիզմի դպրոցների և տեսական սեմինարների պրո-
պագանդիստների համար՝ երկու ամիսը մեկ)։ Քաղլուսկաբինետը, մեթոդխոր-
հուրդները ձգտում են, որպեսզի պրոպագանդիստները սեմինարների ընթաց-
քում լիովին պատրաստ լինեն հաջորդ պարապմունքի անցկացմանը։ Այդ ը-
պատակով նրանց համար առանձնացվում են տեսական, մեթոդական և փաս-
տավիճակագրական նյութեր, ընտրվում համապատասխան գրականություն,
ցուցադրական նյութեր և տեխնիկական միջոցներ։ Մենք մշտապես հետևում
ենք մատուցվող նյութերի հաշվեկշռին, որպեսզի պրոպագանդիստներին ավե-
լորդ նյութերով և տվյալներով անհարկի չծանրաբեռնենք։

Պրոպագանդիստների սեմինար պարապմունքը անցկացվում է երկու փու-
լով։ Առաջին փուլում նրանց բոլորին միաժամանակ մատուցվում են ընդ-
հանուր նյութեր՝ քաղաքական ինֆորմացիա, տեսական ու մեթոդական թե-
մաներով դասախոսություններ, կազմակերպվում է փորձի փոխանակություն
և այլն։ Հաջորդ փուլում նրանք հավաքվում են ըստ սեկցիաների (ըստ դըպ-
րոցների ու դասընթացների) և նրանց տրվում են իրենց դասընթացներին հա-
մապատասխան նյութեր ու տվյալներ։ Պարապմունքների ժամանակ, որպես
հաստատված կարգ, երկու-երեք պրոպագանդիստներ հանդես են գալիս հաշ-
վետվություններով։

Շատ պրոպագանդիստներ իրենց անձնական ստեղծագործական պլաննե-
րում մեծ տեղ են հատկացնում ունկնդիրների հետ տարվող անհատական աշ-
խատանքին, օգնում են նրանց քաղաքական ինքնակրթության կազմակերպ-
մանը այն հաշվով, որ նրանք իրենց տեսական մակարդակը բարձրացնեն
հիմնականում ինքնուրույն աշխատանքի միջոցով։ Այդպիսի ուսանելի փորձ
է կուտակել Արտենիի միջնակարգ դպրոցի պրոպագանդիստ Հ. Հակոբյանը,
որն ունի ավելի քան 30 տարվա պրոպագանդիստական աշխատանքի ստաժ։
Նա մշտապես ձգտում է իր ունկնդիրներին օգնել՝ ինքնուրույն ձևով մշակելու
և յուրացնելու մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատություններն ու
տեսական այլ նյութեր։ Այդ ընթացքում նա մեծ ուշադրություն է նվիրում ինք-
նուրույն ուսումնասիրման մեթոդիկայի խնդիրներին. պարապմունքների ըն-
թացքում յուրաքանչյուր պրոբլեմի քննարկմանը ակտիվորեն ներգրավում է
ունկնդիրներին, հաճախակի հարցնելով նրանց անձնական կարծիքը, բանա-
վեճի առարկա դարձնում այս կամ այն պրոբլեմի լուծման վերաբերյալ նրանց
առաջարկություններն ու վերլուծական դիտողությունները։ Այդպիսի մեթոդով
են գործում նաև պրոպագանդիստներ Լ. Սարգսյանը (Դաշտադեմի սովխոզ),
Ջ. Եկմալյանը (Զարինջայի կոլտնտեսություն), Մ. Սահակյանը (Ալագյազի
սովխոզ) և շատ ուրիշներ։

# ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԸ

...1957 ԹՎԱԿԱՆՆ ԷՐ: Գերազանցության դիպլոմով ավարտելով Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի էլեկտրատեխնիկական ֆակուլտետը՝ Պետրոս Մանվելյանը աշխատանքի է անցնում մայրաքաղաքի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում: Կարճ ժամանակաընթացքում նա մերվում է լավագույն ավանդույթներ ունեցող աշխատավորական այս մեծ կոլեկտիվին, ստացած գիտելիքները ի սպաս դնում ձեռնարկության տեխնիկական առաջընթացին:

Սկզբում ինժեներ-կոնստրուկտոր էր, ավագ ինժեներ, այնուհետև վարել է տարբեր պաշտոններ, եղել է գլխավոր կոնստրուկտորի, ապա՝ գլխավոր ինժեների տեղակալ: Իսկ 1975 թ. նրան վստահվում է «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման գլխավոր դիրեկտորի արտադրության գծով տեղակալի պարտականությունը, որը մինչև այսօր նա կատարում է ամենայն բարեխղճությամբ ու պատասխանատվությամբ:



Լարված է անցնում Պ. Մանվելյանի ողջ օրը: Արտադրություն, հասարակական գործունեություն, ընտանիք... Այս ամենը ստիպել են նրան հաշվի առնել յուրաքանչյուր րոպեն: Ու դա ամենից առաջ զգացվում է այստեղ՝ իր աշխատասենյակում: Բազմաբնույթ հարցեր, խնդիրներ, հոգսեր...

Դյուրին գործ չէ՝ ապահովել այդ վիթխարի արտադրության նորմալ ռիթմը, առավել ևս ժամանակակից նյութատեխնիկական մատակարարման բարդ պայմաններում և այն էլ մի հսկա ձեռնարկությունում, որի յուրաքանչյուր արտադրամաս իր հերթին մի գործարան է: Արդյոք ապահովվա՞ծ են բոլոր արտադրամասերը մետաղով, անհրաժեշտ նյութերով ու պահեստամասերով, փոխադրամիջոցներով, նորմա՞լ են գործում ջերմաէներգետիկ համակարգերը, տեխնիկական ի՞նչ խոչընդոտներ կան, ի՞նչն է խանգարում արտադրական այս կամ այն օղակի համաչափ աշխատանքին... Հարցեր, որոնք մշտապես մտահոգում են գլխավոր դիրեկտորի տեղակալին:

Արտադրական ամենօրյա հոգսերը հոգալուն զուգընթաց՝ Պ. Մանվելյանը մեծագույն պատասխանատվությամբ զբաղվում է նաև պրոպագանդիստական գործունեությամբ: Գաղափարախոսական աշխատանքի մկրտությունը նա ստացել է պոլիտեխնիկական ինստիտուտում, ուսանողական տարիներին: Եղել է ֆակուլտետի կոմերիտական կազմակերպության քարտուղար, այնուհետև՝ ինստիտուտի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղարի տեղակալ, ակտիվորեն մասնակցել ուսանողության շրջանում կազմակերպվող ագիտացիոն-մասսայական աշխատանքին:

Գործարան գալու հենց առաջին տարում նույն եռանդով այստեղ ևս լծվում է հասարակական աշխատանքի: Շուտով ընդունվում է կուսակցության շարքերը, ապա՝ նշանակվում կոմերիտական քաղխմբակի, իսկ երկու տարի անց կուսակցական ուսուցման համակարգում ղեկավարում մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցը: Հետագայում ղեկավարել է արտադրամասի տարբեր բաժինների կուսկազմակերպությունների տեսական սեմինարներ:

Կյանքում քիչ չեն դեպքերը, երբ մարդը բարեխղճությամբ կատարում է իրեն տրված հանձնարարությունները, բայց բավական է, որ նրան առաջ քաշեն վարչական սանդուղքով, անմիջապես վկայակոչում է իր «անչափ զբաղված լինելը» և խնդրում բեռնաթափել հասարակական գործերից: Այդպիսին չէ Պ. Մանվելյանը: Միավորման գլխավոր դիրեկտորի տեղակալ նշանակվելուց հետո էլ տնտեսական, կուսակցական, պրոպագանդիստական աշխատանքը նրա մոտ անխզելի է մեկը մյուսից: Ընկերների բնորոշմամբ՝ հասարակական գործունեությունը նրա կոչումն է, ներքին պահանջը:

«Ապրել աշխատավորների հոծ զանգվածում, իմանալ նրանց տրամադրությունները, հասկանալ մասսային, կարողանալ նվաճել նրա բացարձակ վստահությունը»: Պրոպագանդիստին ներկայացվող լենինյան այս պատգամներով է առաջնորդվում Պ. Մանվելյանը: Այսօր նա մեծ պատասխանատվությամբ վարում է արտադրության բաժնի կուսկազմակերպության գիտական կոմունիզմի դպրոցը, որտեղ ընդգրկված են բարձրագույն տեխնիկական կրթությամբ 25 կոմունիստներ: Նրանք ուսումնասիրում են «ՍՄԿԿ տնտեսական քաղաքականություն» դասընթացը:

ԾԱՆԱՉՎԱԾ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԻ փորձը լայն տարածում է գտել «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորումում: Եվ ինչո՞ւ միայն այստեղ: Պ. Մանվելյանի պրոպագանդիստական գործունեությանը և առաջավոր փորձին ծանոթանալու նպատակով ինչպես միավորման, այնպես էլ Լենինյան շրջանի շատ սեմինարավարներ մասնակցել են նրա ղեկավարած պարապմունքներին, ուսանելի շատ բան ժառանգել նրանից:

Իսկ որո՞նք են այդ առաջավոր ձևերը, նրա պրոպագանդիստական աշխատանքի գաղտնիքները: Առաջին հերթին Պ. Մանվելյանը ձգտում է ամեն կերպ բարձրացնել կուսակցական ուսուցման որակն ու արդյունավետությունը: Պարապմունքները անցկացնում է խիստ սահմանված գրաֆիկով: Գիտակցելով, որ պրոպագանդիստի խոսքը, գաղափարաքաղաքական պատրաստվածությունը քաղուսուցման հաջողության գրավականն են, նա հետևողականորեն զբաղվում է իր գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացմամբ: Չէ՛ որ սովորեցնելու համար նաև պետք է սովորել, լրացնել չիմացածը:

— Այսօրվա ունկնդիրները,— ասում է նա,— մամուլից ու ինֆորմացիայի մյուս աղբյուրներից այնքան հարուստ տեղեկություններ են ստանում, որ անհնար է նրանց հետաքրքրությունը բավարարել առանց անցնելիք թեման խորությամբ ուսումնասիրելու:

Ահա թե ինչու Պ. Մանվելյանը, չնայած ուսումնասիրվող նյութի իր խորագիտակությանը, հանգամանորեն է նախապատրաստվում յուրաքանչյուր պարապմունքի, առանձնապես մեծ ուշադրություն հատկացնում այն հարցերին, որոնք ինքն առաջադրում է ունկնդիրներին:

Պրոպագանդիստի տրամադրության տակ եղած հարուստ ու բազմազան գրականությունը հնարավորություն է ընձեռում նրան՝ խորությամբ ուսումնասիրել ծրագրով նախատեսված թեմաները և նյութը հետաքրքրական ձևով հաղորդել ունկնդիրներին:

Հայտնի է, որ քաղաքական ուսուցման համակարգում պարապմունքների արդյունավետությունն ու որակը ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումից հետո նկատելիորեն բարձրացել է: Ելնելով պլենումի որոշման պահանջները՝ Մանվելյանը ամեն կերպ ձգտում է կատարելագործել պարապմունքների վարման եղանակը, ապահովել դրանց քաղաքական ուղղվածությունն ու գործնականությունը: Քանի որ քաղխմբակի բոլոր ունկնդիրներն էլ ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողներ են, ուստի նա ուշադրությունը կենտրոնացնում է այն հիմնական հարցերի վրա, որոնք վերաբերում են արտադրության ղեկավարման կատարելագործմանը, տնտեսավարման նոր ձևերի ու մեթոդների արմատավորմանը, կարգապահության ամրապնդմանը: Նա կարողանում է յուրաքանչյուր տեսական դրույթ պարզաբանել ու հիմնավորել ձեռնարկության կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով ու փաստերով, ձգտում հասնել այն բանին, որպեսզի ունկնդիրները տեսական դրույթների հիման վրա կարողանան անհրաժեշտ հետևություններ անել իրենց պրակտիկ աշխատանքում: Նման մոտեցումը բխում է ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի այն պահանջներից, որ քաղաքական ուսուցման իմաստն այն է, որ յուրաքանչյուր ոք ավելի խոր ըմբռնի կուսակցության քաղաքականությունը այսօրվա պայմաններում, կարողանա պրակտիկայում կիրառել ստացած գիտելիքները, ավելի պարզորոշ պատկերացնել և պատվով կատարել սեփական պարտքը:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ 1984 թ. հունվարից երկրի էլեկտրատեխնիկական արդյունաբերության համակարգում իրականացվում է տնտեսական գիտափորձը: Այդ նորույթի ներդրմանը ձեռնամուխ է եղել նաև «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կոլեկտիվը: Այն ուսումնասիրության նյութ է դարձել քաղխմբակների, դպրոցների և տեսական սեմինարների համար: Պրոպագանդիստ Պ. Մանվելյանը պա-

րապմունքների ժամանակ պարբերաբար անդրադառնում է տնտեսական գիտափորձի հարցերին: Նա իր առաջնահերթ խնդիրն է համարում պարզաբանել նորույթի էությունն ու նպատակը, ունկնդիրներին հաղորդակից դարձնել այդ ասպարեզում իրենց ձեռնարկությունում կատարվող աշխատանքին: Պրոպագանդիստը ունկնդիրներին բացատրում է, որ տնտեսական գիտափորձը, ըստ էության, պահանջում է կատարելագործել կառավարման սկզբունքները, մեթոդներն ու ձևերը, որ դրա նպատակը հասարակական արտադրության արդյունավետության ըստ ամենայնի բարձրացումն է, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության անշեղ աճի ապահովումը, խրախուսման բոլոր միջոցների կիրառմամբ՝ աշխատանքի մարդու, բարիք ստեղծող մարդու նախաձեռնության զարգացումը: Նա կոնկրետ փաստերով ունկնդիրներին ցույց է տալիս, թե գիտափորձի պայմաններում ինչ իրավունքներ են տրվել կոլեկտիվին, ինչ խթաններ են կիրառվում դրա իրագործման նպատակով:

Թեմաների խոր ու բազմակողմանի վերլուծությունը, տեսության ու պրակտիկայի անխզելի կապի իմաստավորումը, պարապմունքի անցկացման գործարար բնույթը մեծապես նպաստել են այնպիսի մթնոլորտի ստեղծմանը, որի պայմաններում ավելի հաճախ են ծնվում արժեքավոր նախաձեռնություններ, առաջարկություններ ու մտահղացումներ և որը մղում է բանավեճերի, կարծիքների ազատ փոխանակման: Ահա մի բնորոշ օրինակ: Գիտական կոմունիզմի դպրոցի հերթական պարապմունքներից մեկն էր: Թեման՝ «Արտադրության արդյունավետության բարձրացման և դրա հետևողական ինտենսիվացման ՍՄԿԿ կուրսը»: Ունկնդիրները պրոպագանդիստի հետ միասին վերլուծեցին սոցիալիստական էկոնոմիկայի աճի ինտենսիվ գործոնների առավել արդյունավետ օգտագործման պրոբլեմները: Նրանք ցույց տվեցին, թե կոնկրետ իրենց ձեռնարկությունում ինչպիսի աշխատանքներ են տարվում այդ ասպարեզում: Թեման հանգամանորեն վերլուծելու նպատակով նախորդ պարապմունքի ժամանակ պրոպագանդիստն ըստ հարցադրումների բաշխումներ էր արել ունկնդիրների միջև:

Ունկնդիր Ս. Աբրահամյանը, օրինակ, իր ռեֆերատում մեկնաբանեց երկրի էկոնոմիկայի հետագա ամրապնդման գլխավոր գործոնի՝ արտադրության ինտենսիվացման բուն էությունը: Նա նշեց, որ այստեղ տնտեսական առաջընթացի գլխավոր աղբյուրը ոչ թե լրացուցիչ ռեսուրսների ներգրավումն է, այլ դրանց առավել արդյունավետ օգտագործումը: Այլ խոսքով՝ ինտենսիվ զարգացման դեպքում արտադրության արդյունքներն աճում են ավելի արագ, քան ծախսերը: Նման պայմաններում արտադրության ողջ աճը գործնականում ձեռք է բերվում միայն աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ: Ասածը նա հիմնավորեց իրենց ձեռնարկության կոնկրետ օրինակներով: Այստեղ արտադրության ծավալի աճն ընթացիկ հնգամյակում հիմնականում ապահովվելու է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, առանց լրացուցիչ արտադրական տարածություններ հատկացնելու և աշխատուժ ներգրավելու:

Ունկնդիր Ա. Զաքարյանն իր ռեֆերատում անդրադարձավ արտադրական տարածությունների արդյունավետ օգտագործման, տեխնիկական վերազինման, առաջավոր տեխնոլոգիայի ներդրման, նվազ նյութատար նոր կոնստրուկցիաների ստեղծման, խնայողության և այլ հարցերի:

Արտադրության ինտենսիվացման կարևոր ուղիներից մեկի՝ տեխնիկական վերազինման, հարցերին էր նվիրված Ռ. Պետրոսյանի ռեֆերատը: Նա կոնկրետ օրինակներով ցույց տվեց, թե ինչ է արվելու այդ ասպարեզում իրենց ձեռնարկությունում ընթացիկ հնգամյակում և հեռանկարում: Նշեց, որ տեխնիկական վերազինման ասպարեզում արդյունքներն արդեն շոշափելի են: Հնգամյակի անցած ժամանակահատվածում արտադրության ծավալն աճել է մոտ 18 տոկոսով, և այդ աճն ապահովվել է հիմնականում ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման՝ առանց աշխատողների թվաքանակի և արտադրական մակերեսի ավելացման:

Պրոպագանդիստը քննարկվող հարցի առթիվ որոշ լրացումներ անելուց հետո իր ունկնդիրներին հիշեցրեց, որ արտադրության ինտենսիվ զարգացման, դրա արդյունավետության բարձրացման կարևոր գործոններից մեկն էլ նյութական, ջերմաէներգետիկ ռեսուրսների խնայողաբար օգտագործումն է: Այդ հարցի շուրջ ռեֆերատով հանդես եկավ ունկնդիր Է. Ալխազյանը:

Նա փաստերի լեզվով պատմեց, որ ձեռնարկությունում զգալի գործ է արվել արտադրանքի նյութատարության իջեցման, նվազ մետաղատար նոր կոնստրուկցիաներ, մեքենաներ ու մեխանիզմներ ստեղծելու, դրանցում մետաղյա մասերը պլաստմասսայով և համեմատաբար ոչ թանկարժեք նյութերով փոխարինելու, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսներն արմատավորելու ասպարեզում: Այդ ամենի շնորհիվ հնգամյակի անցած երեք տարիներին խնայվել է մոտ 7.426 տոննա սև և 172,4 տոննա գունավոր մետաղ, 24 մլն կվտ/ժամ էլեկտրաէներգիա: Բարելավված նախագծերի արմատավորմամբ հնարավոր է եղել գործարանում պատրաստվող յուրաքանչյուր գեներատորի քաշը թեթևացնել մեկ տոկոսի չափով: Թվում է՝ շատ չէ, բայց եթե հաշվի առնենք, որ տարեկան թողարկվում են հազարավոր գեներատորներ, ապա պարզ կդառնա, որ մետաղի խնայողությունը հաշվվում է հարյուրավոր տոննաներով:

Պ. Մանվելյանը գտնում է, որ պրոպագանդիստի կոչումը սոսկ նյութի ուսուցումը կազմակերպելու մեջ չէ: Նա պետք է իր անձնական օրինակով ունկնդիրների մեջ դաստիարակի իսկական ստեղծագործական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ, նպաստի նրանց կոմունիստական հայացքների ու համոզմունքների ձևավորմանը: Իր բնավորությամբ ու խառնվածքով նա բարեհաճ, պարզ, սիրալիր ու միևնույն ժամանակ սկզբունքային անձնավորություն է: Լավ գիտի իր ունկնդիրներին, հետաքրքրվում է նրանց աշխատանքով, անձնական կյանքով, կենցաղով, հոգում նրանց մասին և անհրաժեշտության դեպքում աջակցում աշխատանքում պաշտոնական առաջխաղացմանը, երաշխավորում կուսակցության շարքերն ընդունվելու: Նրան հետաքրքրում է, թե ինչպես են իր ունկնդիրներն իրենց դրսևորում հասարակական միջավայրում, ինչպիսին է նրանց ընտանեկան մթնոլորտը, երեխաների դաստիարակության դրվածքը: Պրոպագանդիստի այս արժանիքները հարուցել են ունկնդիրների մեծ համակրանքը նրա նկատմամբ:

Պրոպագանդիստը նպաստում է ունկնդիրների արտադրական և հասարակական ակտիվության բարձրացմանը, նրանց ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը: Նրա նախկին ունկնդիրներից շատերը ներկայումս դարձել են արտադրության տարբեր օղակների հմուտ հրամանատարներ, հեղինակավոր մասնագետներ, առաջ քաշվել պատասխանատու այլ աշխատանքի: Ունկնդիրներից Պ. Բաղեյանի ղեկավարած արտադրամասի կոլեկտիվը այսօր կրում է կոմունիստականի պատվավոր կոչումը, իսկ Է. Ալխազյանը, Ս. Աբրահամյանը, Ա. Մարգարյանն ու մյուսները իրենց նորարարական և գյուտարարական առաջարկություններով ու ակտիվ միջամտությամբ մեծ աշխատանքներ են ծավալում արտադրության տեխնիկական վերազինման, աշխատատար պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման ասպարեզում: Պրոպագանդիստի ստեղծած «Առաջարկել են գիտական կոմունիզմի դպրոցի ունկնդիրները» վերտառությամբ մատյանում գրանցվում են պարապմունքների ընթացքում արված առաջարկություններն ու դիտողությունները:

Բոլոր ունկնդիրներն էլ մեծ պատասխանատվությամբ են կատարում նաև կուսակցական, հասարակական տարբեր հանձնարարություններ: Նրանցից 4-ը միավորման կուսկոմիտեի անդամ են, 6-ը՝ երիտասարդության վարպետ-դաստիարակներ: Նախկին ունկնդիրներից ինն այսօր իրենք են կատարում պրոպագանդիստի բարդ ու պատասխանատու պարտականությունը, ղեկավարում քաղդպրոցներ, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներ, կոմերիտական քաղխմբակներ, կոմունիստական աշխատանքի դպրոցներ: Նրանցից առանձնապես մեծ հեղինակություն են վայելում Ա. Մարգարյանը, Ա. Ղուկասյանը, Գ. Հակոբյանը և ուրիշներ:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումում նշվեց, որ բոլոր կուսակցական կոմիտեները պետք է ունենան հատկապես պատրաստված այնպիսի կադրեր, որոնք ընդունակ լինեն հմտորեն կազմակերպելու գաղափարախոսական աշխատանքը բնակչության տարբեր խմբերի՝ բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության, երիտասարդության հետ և պատասխանատու լինեն այդ աշխատանքի համար: Նրանք պետք է լինեն հեղինակավոր, կրթված մարդիկ:

Այսօր Հայաստանի արդյունաբերության խոշորագույն ձեռնարկություններից մեկի՝ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման շուրջ 500 ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողներ, նրանց թվում և գլխավոր դիրեկտորի՝ արտադրության գծով տեղակալ Պ. Մանվելյանը, զուգակցելով տնտեսական և գաղափարադաստիարակչական աշխատանքը, մոբիլիզացնում են բազմահազարանոց կոլեկտիվին՝ նոր ավանդ ներդնելու մեր հայրենիքի տնտեսական վերելքի և պաշտպանական հզորության ամրապնդման գործում: Եվ նրա ջանքերը գնահատվել են: 1982 թ. նա արժանացավ «Լավագույն պրոպագանդիստ» մեդալին, իսկ 1983 թվականին, աշխատավորական մասսաների կոմունիստական դաստիարակության գործում ունեցած վաստակի համար, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով նրան շնորհվեց Հայկական ՍՍՀ կուլտուրայի վաստակավոր աշխատողի պատվավոր կոչում:

**Վ. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ**
**«Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման կուսկոմիտեի քաղլուսկաբինետի վարիչ**

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ (1983 թ.) պլենումում նշվեց, որ, ռազմական մրցավազքին զուգընթաց, միջազգային իմպերիալիզմը ԱՄՆ-ի գլխավորությամբ ծավալել է այնպիսի հակասովետական, հակակոմունիստական պրոպագանդա, որն իր ինտենսիվությամբ ու սրությամբ աննախադեպ է ողջ հետպատերազմյան ժամանակաշրջանում: Իմպերիալիզմի այդ քաղաքականության գլխավոր նպատակն է՝ թունավորել սովետական մարդկանց գիտակցությունը, խեղաթյուրել մարքս-լենինյան գաղափարախոսությունը, թուլացնել կուսակցության ու ժողովրդի կապը, հակադրել սերունդներին, խարխլել մեր բազմազգ ժողովրդի կուռ միասնությունը: Արդ խնդիր է դրված է՛լ ավելի զարգացնել սովետական մարդկանց քաղաքական աչալրջությունը, թշնամական հայացքների նկատմամբ անհաշտվողականությունը, դասակարգային հակառակորդի գաղափարախոսական դիվերսիաներին, ռեալ սոցիալիզմի հասցեին օպորտունիստական և ռևիզիոնիստական հարձակումներին դիմագրավելու կարողությունը:

Մեր երկիրը հզոր է իր ժողովուրդների բարոյաքաղաքական միասնությամբ: Սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ ու հայրենասիրական միասնությունն ու համերաշխությունը հզոր ու անհաղթելի ուժ են: Դրանց մեջ կուսակցությունը տեսնում է այն, ինչ բազմապատկում է երկրի տնտեսական, քաղաքական ու ռազմական հզորությունը, դարձնում նրան անխորտակելի ամրոց իմպերիալիզմի բոլոր տեսակի ոտնձգությունների դեմ հանդիման:

Ինտերնացիոնալիզմի, հայրենիքին ու ժողովրդին նվիրվածության ոգով դաստիարակելու մեծ դպրոց է սովետական բանակը: Հաստատակամորեն տիրապետելով ժամանակակից ռազմական տեխնիկային՝ երիտասարդ զինվորը պատրաստ է կատարելու իր ինտերնացիոնալ պարտքը, շարունակելու հայրերի ու պապերի զինվորական լավ ավանդույթները, բազմապատկելու մեր հայրենիքի հերոսական փառքը, ամրապնդելու նրա ժողովուրդների մարտական համագործակցությունը, որն անգնահատելի դեր խաղաց ֆաշիստական Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի ջախջախման գործում:

Հետպատերազմյան տարիներին արևմտյան երկրներում, հատկապես ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում, Արևմտյան Գերմանիայում, լույս է տեսել մեծաքանակ գրականություն՝ նվիրված երկրորդ համաշխարհային պատերազմին: Մեկնաբանելով պատերազմում գերմանական ֆաշիզմի պարտության հիմնական պատճառները՝ երկրորդ համաշխարհային պատերազմի պատմության կեղծարարները նշում են, որ եթե ֆաշիստական Գերմանիայի պարագլուխները ինչպես մինչ պատերազմը, այնպես էլ պատերազմի ժամանակ կարողանային ավելի լայնորեն ծավալել իրենց հակասովետական գործունեությունը, ապա կկարողանային թուլացնել իբր հարկադրաբար մեկ պետության մեջ միավոր-



ված սովետական ժողովուրդների միասնությունը, նրանց միմյանց հակադրելով խախտել սովետական զինված ուժերի մարտունակությունը և հաղթանակով ավարտել Սովետական Միության դեմ մղվող պատերազմը:

Ստացվում է այնպես, որ ֆաշիստական Գերմանիայի ռազմաքաղաքական ղեկավարությունը իբրև թե հաշվի չէր առել սովետական պետության բազմազգ կառուցվածքը և ոչինչ չէր արել սովետական ազգերի մեջ թշնամություն սերմանելու, նրանց միմյանց հակադրելու համար: Մինչդեռ հայտնի է, որ, մշակելով ՍՍՀՄ-ի դեմ կայծակնային պատերազմ վարելու իր պլանը, ֆաշիստական Գերմանիայի ղեկավարությունը նախատեսում էր բազմաթիվ միջոցառումներ, որպեսզի խարխլեր ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը, սեպ խրեր նրանց միասնության մեջ, մյուս ազգերին հակադրեր ռուսներին, դրանով իսկ թուլացներ սովետական զինված ուժերը և մինչև ձմեռ ավարտեր պատերազմը ՍՍՀՄ-ի դեմ:

Ֆաշիստական կլիկը 1941 թ. ապրիլի 20-ին ստեղծեց Արևելյան Եվրոպայի տարածությունների կենտրոնական վերահսկողության վարչություն՝ Ռոզենբերգի գլխավորությամբ: Այդ հակասովետական հաստատությունը կարճ ժամանակամիջոցում համալրվեց հարուստ փորձ ունեցող պրոպագանդիստական կադրերով: Գործող բանակի կազմում կազմավորվեցին 17 պրոպագանդիստական վաշտեր, որոնք պետք է թշնամություն սերմանեին սովետական ազգերի միջև:

Պատերազմի նախօրյակին գերմանական վերմախտին առընթեր գործող պրոպագանդայի բաժինը հաստատեց «Բարբարոսա» պլանին կից հակասովետական պրոպագանդա վարելու հատուկ դիրեկտիվ, որը պարտավորեցնում էր պրոպագանդայի ու ագիտացիայի բոլոր միջոցներով թշնամություն սերմանել սովետական ազգերի միջև, խարխլել սովետական ժողովուրդների բարեկամությունը, հակադրել ժողովրդին կոմունիստական կուսակցությանը: Այդ բաժնի ղեկավարներից Տաուլցն իր գործակալներից պահանջում էր ուժեղացնել քայքայիչ աշխատանքը սովետական ազգերի մեջ, հայրենիքի դավաճաններ Մելնիկին ու Բենդերին հանձնարարել էր պատերազմն սկսվելուն պես կազմակերպել հակասովետական ելույթներ կարմիր բանակի մերձակա թիկունքում:

Այսքանից հետո պնդել, թե ֆաշիստական Գերմանիայի քաղաքական ու ռազմական ղեկավարությունը ոչինչ չէր անում հակադրելու սովետական ազգերին, առաջ բերելու ընդհարում ռուս և մյուս ազգերի միջև, թուլացնելու սովետական ժողովուրդների կապը կոմունիստական կուսակցության հետ, նշանակում է բացահայտ կեղծիք գործել: Ինչպես անցյալում գերմանական ֆաշիզմի պարագլուխները, այնպես էլ միջազգային իմպերիալիզմի ժամանակակից գաղափարախոսները չեն կարողանում հասկանալ երկու կարևոր հանգամանք: Նախ՝ սովետական եղբայրական ժողովուրդների միասնությունն ու համագործակցությունը ձևավորվել են ոչ թե հարկադրանքի տակ, այլ կամավոր, լիակատար հավասարության պայմաններում: Սովետական բազմազգ ժողովուրդների եղբայրական համագործակցությունը ծնվել, աճել ու ամրապնդվել է ցարիզմի դեմ նրանց մղած միասնական հերոսական պայքարում, ռուսական երեք հեղափոխությունների մարտական բովում, քաղաքացիական պատերազմի տարիներին, սոցիալիզմի կառուցման համար ծավալած հերոսական աշխատանքում: Եվ երկրորդ՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը հնարավորություն ընձեռեց իրագործելու կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունը, որը խարսխվում է ազգերի ինքնորոշման, տնտեսական, քաղաքական ու կուլտուրական հավասար և համամասնական զարգացման, փոխադարձ օգնության ու աջակցության վրա: Սոցիալիստական շինարարության տարիներին սովետական ժողովուրդներն իրենց սեփական փորձով համոզվեցին նոր հասարակարգի անվիճելի առավելության մեջ, հասարակարգ, որը փրկեց նրանց աղքատությունից, իրավազրկությունից ու շահագործումից:

Եվ միանգամայն օրինաչափ է, որ Սովետական Միության վրա իրենց ուխտադրուժ հարձակման առաջին իսկ օրվանից գերմանաֆաշիստական հրո-

սակախմբերը հանդիպեցին այնպիսի լուրջ դիմադրության, ժողովուրդների այնպիսի միասնական ճակատի, որոնց նմանը չէր եղել պատմական անցյալում: Կոմունիստական կուսակցության կոչով սովետական բազմազգ ժողովուրդը մեկ մարդու պես ոտքի ելավ պաշտպանելու իր սոցիալիստական հայրենիքը, նրա ազատությունն ու անկախությունը, մեծ Հոկտեմբերի նվաճումները:

ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՇՐՋԱՆՈՒՄ կարմիր բանակն ունեցավ ժամանակավոր անհաջողություններ և կրեց մարդկային ու տեխնիկայի զգալի կորուստ: Ստեղծված դրությունը պահանջում էր կարճ ժամանակամիջոցում, ի հաշիվ պահեստային զինծառայողների, համալրել գործող բանակը, ստեղծել ստրատեգիական ռեզերվներ: Միայն 1941 թ. հունիսի 22-ից մինչև տարվա վերջը կազմավորվեցին և գործող բանակի շարքերը համալրեցին 291 դիվիզիա և 94 բրիգադ: ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Բելոռուսիայի հետ սովետական զինված ուժերի համալրման գործում մեծ ավանդ ներդրեցին Ղազախստանը, Միջին Ասիայի, Անդրկովկասի և Մերձբալթյան հանրապետությունները:

Ազատագրական այդ գոտեմարտում իր արժանի ներդրումն ունի և հայ ժողովուրդը: Պատերազմի առաջին իսկ օրը հանրապետության քաղաքներում ու գյուղերում տեղի ունեցան հակաֆաշիստական բազմամարդ միտինգներ, որտեղ Հայաստանի աշխատավորները, դատապարտելով ֆաշիստական բարբարոսներին, իրենց ցանկությունն էին հայտնում՝ սովետական ժողովուրդների առաջին շարքերում մարտնչել գերմանական հորդաների դեմ:

Անդրկովկասի ժողովուրդների կամքով և կուսակցական ու սովետական մարմինների կազմակերպչական աշխատանքի շնորհիվ պատերազմի առաջին տարում ստեղծվեցին մի շարք ազգային դիվիզիաներ: 1942 թ. երկրորդ կեսին ռազմաճակատ մեկնեցին Հայկական 89-րդ, 408-րդ և 409-րդ դիվիզիաները:

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ փորձությունների բովում թրծվեց ու է՛լ ավելի համախմբվեց սովետական բազմազգ ժողովուրդը: Ռազմադաշտում նրա զինվորների ցուցաբերած մասսայական հերոսությունը ոսկյա տառերով գրվեց համաշխարհային պատմության մեջ: Սովետական զինված ուժերի բազմազգ անձնակազմի կուռ միասնությունը, համագործակցությունը մեծ ուժով դրսևորվեցին սովետագերմանական ռազմաճակատի բոլոր հատվածներում, բոլոր խոշոր ճակատամարտերում, ամբողջ պատերազմի ընթացքում: Մոսկվայի տակ մղվող պաշտպանական ու հարձակողական մարտերին կարմիր բանակի շարքերում հերոսաբար մարտնչում էին Ղազախստանից եկած չորս հրաձգային, Ուզբեկստանից՝ չորս հրաձգային և երկու հեծելազորային դիվիզիաներ, Կիրգիզիայից՝ մեկ հրաձգային դիվիզիա և մեկ հրաձգային բրիգադ, լատիշական հրաձգային դիվիզիան: Նրանցից շատերը աչքի ընկան մարտի դաշտում և ստացան գվարդիականի պատվավոր կոչում: Չնայած անդրկովկասյան հանրապետությունները այդ ճակատամարտում ներկայացված չէին դիվիզիաներով, սակայն Մոսկվայի համար մղվող մարտերում իրենց խիզախությամբ աչքի ընկան հազարավոր վրացիներ, ադրբեջանցիներ և հայեր:

Հայրենական մեծ պատերազմի պատմության մեջ առանձնահատուկ դեր ունի ստալինգրադյան էպոպեան: Ստալինգրադի տակ մեր տարած պատմական հաղթանակը սովետական բոլոր ժողովուրդների ռազմիկների կուռ միասնության ու եղբայրական համագործակցության արգասիքն էր: Սովետական ժողովուրդների միասնության, համերաշխության ու եղբայրության իսկական քըննություն էր նաև Կովկասի համար մղված ճակատամարտը: Սկսելով հարձակումը դեպի Կովկաս՝ ֆաշիստական հրամանատարությունը հույս ուներ, որ սովետական ժողովուրդների այդ ամենաբազմազգ շրջանի մեջ իբր գոյություն ունեցող հակասությունները կթուլացնեն սովետական զորամասերի դիմադրությունը: Սակայն վտանգի ծանր պահին կովկասցիները միասնական ճակատով դուրս եկան ընդդեմ թշնամու: 1942 թ. օգոստոսի 23-ին Թբիլիսիում տեղի ունեցավ Վրաստանի, Ադրբեջանի, Հայաստանի, իսկ այնուհետև՝ Հյուսիսային Կովկասի ժողովուրդների հակաֆաշիստական միտինգ, որի մասնակիցները,



անարգանքի սյունին գամելով ֆաշիստական զավթիչներին, երդվեցին համախմբվել կոմունիստական կուսակցության շուրջը, ամեն կերպ ամրապնդել սովետական ժողովուրդների դարավոր բարեկամությունը, պաշտպանել հարազատ Կովկասը և ամրապնդել նրա անխզելի կապը Սովետական Միության հետ:

Սովետական զորքերը կատաղի մարտերում գլխովին ջախջախեցին գերմանաֆաշիստական զինված ուժերը Կուրսկի տակ և նախաձեռնությունը վերջնականապես վերցրին իրենց ձեռքը: Այդ գոտեմարտին մասնակցում էին գրեթե բոլոր ազգերից կազմված ինտերնացիոնալ զորամասերը:

Սովետական զինված ուժերը, ֆաշիստական օկուպանտներից ազատագրելով մեր հայրենիքի ընդարձակ տարածությունները, կատարեցին իրենց ինտերնացիոնալ ազատագրական պարտքը՝ եղբայրական ձեռք մեկնեցին ֆաշիզմի լծի տակ տառապող ժողովուրդներին: «Մեր ժողովուրդները,— նշել է ՉՍՍՀ կոմկուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Գ. Հուսակը,— երբեք չեն մոռանա այն, որ հերոսական սովետական բանակը ազատագրեց Չեխոսլովակիան և դրանով իսկ մեր ժողովրդին փրկեց ֆիզիկական բնաջընջումից»:

Հայրենական մեծ պատերազմն ավարտվեց ֆաշիստական Գերմանիայի ու նրա դաշնակիցների զինված ուժերի ջախջախմամբ: Այդ հաղթանակը սովետական բազմազգ ժողովրդի՝ մարդկության պատմության մեջ աննախադեպ միասնության ու եղբայրական բարեկամության իսկական արտահայտություն էր:

Սովետական ժողովուրդների մարտական համագործակցության վառ էջ էր նաև համաժողովրդական պարտիզանական շարժումը թշնամու թիկունքում: Կարճ ժամանակաշրջանում թշնամու կողմից զավթված սովետական հողի վրա կազմակերպվեց ավելի քան հազար պարտիզանական ջոկատ: Այդ ջոկատների կազմում արիաբար մարտնչում էին բոլոր ազգերի ներկայացուցիչներ: Պարտիզանական պայքարին ակտիվորեն մասնակցում էին նաև հազարավոր հայորդիներ: Մ. Նաումովի, Պ. Վերշիգորայի պարտիզանական զորամասերի շարքերում գործում էին Ա. Միկոյանի անվան, «Հաղթանակ» հայկական պարտիզանական ջոկատները: Թշնամու թիկունքում կատարած իրենց հերոսական գործերով աչքի ընկան Ժորա Հարությունյանը, Մայա Փահլևանյանը, Գալուստ Ստեփանյանը, Արտեմ Սողոմոնյանը, Հենրիկ Զաքարյանը, Գրիգոր Սարգսյանը և շատ ուրիշներ:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ մարտական համագործակցությունը չէր սահմանափակվում միայն ռազմաճակատում: Այն վառ կերպով արտահայտվում էր նաև թիկունքում՝ կյանքի բոլոր բնագավառներում: Քաղաքական բնագավառում այն արտահայտվում էր սովետական բազմազգ պետության հետագա զարգացումով, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի ամրապնդումով, կոմունիստական կուսակցության դերի հետագա բարձրացումով: Սովետական հանրապետությունների ողջ տնտեսական հզորությունը ի սպաս էր դրվել կուսակցության՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար», «Ամեն ինչ հաղթանակի համար» նշանաբանների իրագործմանը:

Ղեկավարվելով կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության ցուցումներով՝ պատերազմն սկսվելուց անմիջապես հետո, տեղական կուսակցական ու տնտեսական կազմակերպությունները ծավալեցին լայն աշխատանք՝ արդյունաբերական ձեռնարկությունները վտանգավոր գոտուց տեղափոխելու և դրանք երկրի խորքերում գործարկելու համար: Բելոռուսիայի, Ուկրաինայի, Լիտվայի, Լատվիայի, Էստոնիայի, Մոլդավիայի կուսակցական կազմակերպությունների որոշմամբ 1941 թ. երկրորդ կիսամյակում արևելք տեղափոխվեցին 1.523 արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ, մեկ միլիոն վագոն ժողովրդատնտեսական բեռներ և ավելի քան 10 միլիոն մարդ:

Փաստորեն մի ամբողջ ինդուստրիալ երկիր մի քանի ամսվա ընթացքում հազարավոր կիլոմետր շարժվեց արևելք: Այդպիսի բարդ ու դժվարին խնդիր կարող էր լուծել մի ժողովուրդ, որն իր բոլոր ուժերը անմնացորդ նվիրաբերում է հայրենիքի անկախության ու ազատության համար մղվող պայքարին:

Դնեստրի ափին ակնարկի հերոսն է կարմիր բանակի փորձված հետախույզ Գեղամ Հովհաննիսյանը: «Հիանալի տղա է թալինցի Գեղամը,— ասել է ռուս հրամանատարը,— անվախ է ինչպես Սասունցի Դավիթը, երևի նրա հազարերորդ ժառանգներից մեկն է...» (17 VI, 1944):

Լրագրի մի քանի համարներում տպագրված **Դնեստրի հերոսը** ակնարկում ներկայացված են Ուկրաինայի ազատագրման համար մղված մարտերում զոհված Սովետական Միության հերոս Անդրանիկ Մուրադյանի սխրագործությունները: Սգո միտինգում քաղաշխատող Գրիգորենկոն նշել է. «...Անդրանիկ Մուրադյանը իսկական հերոս էր... Նա կովի պահին չգիտեր, թե ինչ բան է վախը, որովհետև նրա մեջ հայրենիքի վեհ գաղափարը բարձր էր ամեն ինչից: ...Այդ անմահ հերոսին չի կարելի մոռանալ, նա թողեց մարտական լավագույն տրադիցիաներ: Այդ դյուցազունի անունը ոսկե տառերով պիտի գրվի... Ուկրաինայի ազատարարների շարքում...» (12 18, VIII, 1944):

Լրագրում հրապարակվում են սովետական ինֆորմբյուրոյի հաղորդագրությունները, ուր հակիրճ ընդհանրացվում էին ռազմական գործողությունները, նշվում առանձին զորամասերի, առանձին կարմիրբանակայինների ու հրամանատարների սխրանքները: Հետագայում թերթը ռազմական առօրյայից վերցրած բնորոշ օրինակներով ընդհանրացումներ է արել, բացահայտել ռուս, հայ և մյուս ժողովուրդների անցյալի մարտական ավանդույթները: Ժողովրդական էպոսից բերվում էին հատվածներ, որտեղ ցույց էր տրվում մեր ժողովրդի քաջությունը, նրա աննկուն ոգին:

**Ոգեշնչվիր քաջարի նախնիներիդ կերպարով, Հայ ժողովրդի հերոս նախնիները, Դավիթ Բեկ, Սասունցի Դավթի վերջին զարկը, Գևորգ Մարզպետունու երդումը, Հայ նշանավոր զորավարները** և մի շարք այլ ակնարկներով թերթը հայ մարտիկներին ոգևորում էր մեր պատմական անցյալի հերոսական դրվագներով, կոչ անում արևաշող Հայաստանի որդիներին՝ «...թող նոր ուժով վերակենդանանա ձեր մեջ մեր քաջ նախնիների խիզախությունը...» (14 VI, 1944), «Հազարամյակներ շարունակ իր սուրը պատյան չի դրել մեր ժողովուրդը: Նա տանջանքի անհելի լեռներ է խորտակել, մինչև որ հասել է երջանկության... ոչ մի րոպե չմոռանանք, որ ...վճռվում է Սովետական Միության բախտը, հայ ժողովրդի բախտը...» (29 XI, 1943): «Կռվենք թշնամու դեմ այնպես, ինչպես կռվել են անցյալում մեր բազմաչարչար ժողովրդի հերոս նախնիները» (14 VIII, 1943), «Հիշեցեք մեր ժողովրդի իմաստուն խոսքերը— չգիտակցված մահը՝ մահ է, գիտակցված մահը՝ անմահություն» (14 VI, 1944):

1943 թվականի օգոստոսի 7-ի համարում տպագրված **Գերմանական իմպերիալիզմը հայ ժողովրդի թշնամին, Հայ ռազմիկ, կարդա և իմացիր, Հայերի կոտորածը գերմանական դեսպանների միջոցով** և մի շարք այլ հոդվածներում լրագիրը հայ մարտիկներին հիշեցնում է, որ թուրքերի կազմակերպած հայ ժողովրդի մեծ եղեռնի պատասխանատվությունն ընկնում է նաև գերմանական իմպերիալիստների վրա (7 VIII, 1943): Բերվում են բազմաթիվ օրինակներ գերմանական իմպերիալիզմի կողմից հայ ժողովրդի նկատմամբ ցուցաբերված վայրագությունների մասին: Ատելություն սերմանելով թուրք-գերմանական զավթիչների, ջարդարարների նկատմամբ՝ «Սովետական ռազմիկը» կոչ է արել հայ մարտիկներին. «Ձեր հայրերի, մայրերի, եղբայրների ու քույրերի թափած արյունը ձեզնից վրեժ է պահանջում» (նույն տեղը):

Ով կարող է մոռանալ հայ ժողովրդի նամակը՝ ուղղված հայ մարտիկներին, որը լույս տեսավ ինչպես ճակատային, այնպես էլ թիկունքի մամուլում: Այդ նամակը, որ տպագրվեց նաև «Սովետական ռազմիկի» մի քանի համարներում, սուրբ պատվիրան էր հայ մարտիկներին. «Ընկեր բանակայիններ և հրամանատարներ, մեր հարազատ զավակներ և եղբայրներ, եռանդով, սրտի ամենայն ատելությամբ ոչնչացրեք գերմանական զավթիչներին և շուտ քշեցեք նրանց մեր հարազատ հողից»:

Թերթի մի այլ համարում զետեղված է ավագ լեյտենանտ Արշակ Ոստոյանի՝ Հյուսիսային Կովկասում ապրող իր քրոջից ստացած նամակը. «Սիրելի Արշակ,— գրում է քույրը,— գերմանական գազանները սպանեցին մեր ծերունի հորը, տանջամահ արեցին մայրիկին, անարգեցին կնոջդ, սպանեցին երեխաներիդ: Քո ամբողջ ընտանիքից մնացել եմ ես: Վրեժ առ, իմ սիրելի եղբայր...» (24 VIII, 1943): Լրագրի հաջորդ ամսվա 9-ի համարում Արշակը գրում է. «Ես երդվում եմ, վրեժ առնել իմ ընտանիքի համար, գերմանացիների կողմից խոշտանգված հազարավոր ընտանիքների համար, ...սովետական մարդու ամեն մի արցունքի համար: Ես կխփեմ ֆաշիստական գազաններին, քանի դեռ բազուկներումս ուժ կա»: Այնուհետև պարբերաբար էջեր են նվիրվում այդ նամակի արձագանքներին:

Հրապարակված այս և բազմաթիվ այլ նամակներ տոգորված էին սովետական ջերմ հայրենասիրությամբ, թշնամու հանդեպ բուռն ատելությամբ: Հայրենական մեծ պատերազմում հայ ժողովուրդը ներդրեց իր ծանրակշիռ ավանդը, Միության մյուս ժողովուրդների հետ միասին պաշտպանեց իր պատիվը, ազատությունը, ազգային անկախությունը:

1944—1945 թվականները դարձան Հայրենական մեծ պատերազմի ավարտական փուլը: Մարտերը մղվում էին ֆաշիստների զավթած եվրոպական երկրների տարածքներում: Նոր պայմաններում շարունակվեց «Սովետական ռազմիկի» դժվարին գործունեությունը: Նոր իրադրությունը պահանջեց գաղափարական նոր լիցք հաղորդել լրագրի պրոպագանդիստական նյութերին: Եթե պատերազմի սկզբնական շրջանում այն իր ողջ ուշադրությունը կենտրոնացնում էր սովետական երկիրը գերմանաֆաշիստական զավթիչներից ազատագրելու վրա, ապա 1944—1945 թվականներին, երբ մեր երկիրն արդեն լիովին ազատագրված էր հիտլերյան զավթիչներից, առաջին պլանի վրա մղվեց Եվրոպայի ժողովուրդներին ֆաշիստական ստրկությունից ազատագրելու, թշնամուն իր որջում լիովին ջախջախելու խնդիրը:

Առաջնորդողներում ու հոդվածներում շեշտվում էր, որ սովետական զինվորը ազատարար զինվոր է, և Եվրոպայի երկրների աշխատավորների ու քաղաքացիական բնակչության հանդեպ նրա հումանիստական վերաբերմունքը ունի քաղաքական մեծ նշանակություն: Լրագիրը յուրաքանչյուր սովետական զինվորից պահանջում էր ազատագրվող երկրների աշխատավորների հետ ունեցած իր հարաբերություններում ամենուրեք հանդես գալ որպես սոցիալիզմի երկրի արժանավոր ներկայացուցիչ, բարձր պահել սովետական մարդու արժանապատվությունը (8 XII, 1944, 30 IX, 1944): **Բուլղարների երկրում, Ազատագրվածների և ազատարարների ուրախությունը, Մենք փրկում ենք աշխարհի քաղաքակրթության գործը** նյութերում թերթը պատմում է այն մասին, թե ինչպիսի ջերմությամբ են ընդունում Եվրոպայի ժողովուրդներն իրենց ազատարարին՝ Կարմիր բանակին:

Լրագրում հրապարակվել են նաև պատմաաշխարհագրական տեղեկանքներ, քարտեզներ այն երկրների մասին, ուր ոտք էր դնում մեր զինվորը: Այսպես, օրինակ, ամբողջական էջեր են նվիրվել Հունգարիային, Բուդապեշտին, Հարավսլավիային, Ավստրիային, առանձին բաժին՝ Վիեննային և այլն: Զինվորական լրագրողները հանգամանալի ինֆորմացիա էին հաղորդում ազատագրված երկրների ռազմատնտեսական և քաղաքական դրության մասին:

1944 թվականի հոկտեմբեր—նոյեմբերին «Սովետական ռազմիկը» տպագրեց **Ռուսները Բալկաններում** ընդհանուր վերնագրով ակնարկաշարը, որի նպատակն էր օգնել մարտիկներին՝ հստակ ու ճիշտ կողմնորոշվելու շրջապատող նոր պայմաններում, բացատրել նրանց, որ Սովետական Միությունը եղել է բուլղար և հարավսլավական ժողովուրդների դարավոր բարեկամը՝ կապված փոխադարձ հարգանքի ջերմ զգացումով:

Լրագրում հրապարակվում էին փորձառու հետևակայիններին, հրանոթաձիգներին, հրետանավորներին նվիրված հոդվածներ, կոնկրետ օրինակներով ցույց էր տրվում, թե ինչպես են մեր զինվոր-հետևակայինները, հրետանավորները, տանկիստները տիրապետում զենքին. «Քո ուժը, մարտիկ,— գրում էր թերթը,— քո զենքի մեջ է» (17 XI, 1943):

Հայրենական մեծ պատերազմի փոթորիկների մեջ հաղթեցին սովետական բանակը, նրա հզոր զենքն ու տեխնիկան, նրա ռազմական արվեստը, սովետական զինվորի անընկճելի, չգերազանցված հայրենասիրական ոգին: Այդ հաղթանակում իր բաժինն ունի նաև ռազմաճակատային մամուլը:

**Գ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

1972-ին Գեղամ Խաչատրյանին պարգևատրեցին Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով: Անցած հնգամյակներում նրա անունը մշտապես գրանցվել է սոցմրցության հաղթողների ցուցակում, ընտրվել է Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի պատգամավոր: Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի կուսկազմակերպությունում, որի կոմիտեի անդամն է նա, շատ հարցեր են լուծվել, քննարկվել ու վճռվել ճանաչված հանքագործի առաջարկությամբ: Իսկ երիտասարդ կոմունիստների համար կյանքի լավ դպրոց է նրա բրիգադի և նաև նրա անձնական օրինակը:

Աշխատանքից հետո հաճախ դափնեկիր հանքագործն իր երեք զավակների հետ քննարկում է օրվա արդյունքները, մտածում, ուղիներ որոնում նոր բնագծեր նվաճելու համար:

Երկու տարի առաջ է վաստակած հանգստի իրավունքը ձեռք բերել, բայց շարունակում է հանքախորշ իջնել: Իջնում է, որովհետև չի կարող ձեռները ծալած նստել ու հեռվից նայել այն լեռներին, որոնց ընդերքում աշխատում է ահա շուրջ չորս տասնամյակ: Եվ գիտի, թե դեռ ինչքա՜ն անելիք կա այնտեղ: Իսկ աշխատանքից հետո այգում ծառ ու ծաղիկ խնամելը, թոռնիկների հետ զբաղվելն էլ քիչ գործ չէ: Երեկոյան սիրում է քայլել իր քաղաքի փողոցներով, ներքնից նայել ժայռերին, ջինջ երկնքին, հարազատ ծննդավայրի երկնքին, որն իր համար ամենամաքուրն է ցերեկով ու ամենաաստղալիցը՝ գիշերով...

**ՕՖԵԼՅԱ ՏՈՆՈՅԱՆ**

---



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ, բողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 20.04.84 թ.: Ստորագրված է տպագրության 21.05.84 թ.: ՎՖ 04613: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16482: Պատվեր՝ 1079:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.